# ՍԻՐԵԼԻ ՃԱՄՓԱՆ

*ՍՈՒՐԷՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Մայրիկս մի առավոտ,
Ամուր բռնած իմ ձեռքից,
Նոր փողոցով անծանոթ
Մինչև դպրոց տարավ ինձ:
Հետո օրերը անցան,
Սովորեցի ես ճամփան:

Հիմա ճամփան լավ գիտեմ,
Մենակ գնում եմ արդեն:
Դուրս եմ գալիս մեր բակից,
Անցնում եմ զով պուրակից...
Ահա և մեծ պողոտան.
Այստեղ ինչքան շենքեր կա՜ն...

Մայթի եզրին, մի տան մոտ,
Ցայտաղբյուրն է ինձ ծանոթ,
Հետո՝ կինոն. իսկ հեռվում
Հյուրանոցն է երևում:
Հյուրանոցի դեմ-դիմաց
Վարդագույն շենքն է կանգնած.
Իմ սիրելի շենքն է սա,
Տեսե՜ք, դպրոց ես հասա:






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 9

**ՍԵՊՏԵՄԲԵՐ**

1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Առաջին օրը դպրոցում: Այս երեխաները ծնվել են յոթ տարի առաջ հիմնըված Նոր-Արեշ ավանում: Նրանք այս տարի ընդունվեցին ավանի նորակառույց դպրոցի առաջին դասարանը:**

*Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*



# Նրանց հեռավոր ԸՆԿԵՐԸ

Գր. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Վ. ԹՈՎԱՆՅԱՆԻ

Գնացքն ինչքան մոտենում էր Երևանին, այնքան Սամվելը անհամբեր էր դառնում: Հոկտեմբերյանից հետո նա այլևս չկարողացավ կուպեում հանգիստ մնալ: Դուրս եկավ, կանգնեց լուսամուտի առաջ և սկսեց նայել ձմերուկի ետ գնացող բոստաններին, բամբակի դաշտերին, բրնձի արտերին: Մի կոլտնտեսական, արևակեզ դեմքը բարձրացրեց և Սամվելին նկատելով ձեռքով արեց:

Սամվելը շրջեց վագոնում: Նա զարմանում էր, որ մարդիկ իրար հետ խոսում են հանգիստ, կամ ախորժակով նախաճաշում: Մի տղա նույնիսկ քնել էր: Մազի մի փնջիկ քամուց տատանվում էր. մեկ ընկնում էր դեմքին, մեկ հեռանում: Գնացքի ընթացքից նրա մարմինն օրորվում էր, բայց տղան չէր արթնանում: Սամվելը զարմացած նայում էր նրան: Ինչպե՞ս կարելի էր քնել, երբ երկար ժամանակ բացակայել ես Երևանից, և շուտով տեղ ես հասնելու: Սամվելն այնքա՜ն կուզենար բռնել այդ մազափնջից, և մի թեթև ձգելով արթնացնել նրան: Եվ զարմանալին այն էր, որ այդ տղան նման էր իր ընկերոջը՝ Մամեդին: Բայց ոչ, դա միայն արտաքին նմանություն էր: Մամեդը չէր կարող այդպես անտարբեր լինել...

Սամվելը ձանձրացավ այդ տղային նայելուց և կուպե վերադարձավ:

— Արի ճաշ կեր, սոված կլինես,—ասաց տատիկը և պատրաստվեց իր կողքը դրված կապոցից ինչ-որ բաներ հանել: Բայց Սամվելն ուսերը բացասաբար շարժեց.

— Ուտել չեմ ուզում,—ասաց նա: Տատիկի ձեռքը մնաց կապոցի վրա:

— Առավոտվանից բան չես կերել,—համոզող ձայնով վերջին փորձը արեց նա:

Սամվելը նստեց նրա կողքին, համաձայնեց ուտել ու նորից, երևի տասներորդ անգամ, հարցրեց.

—Տատի՛, քանի՞ ժամից հետո Երևան կհասնենք:

***

Երևանի կայարանում նրանց դիմավորեցին Սամվելի ծնողները: Մայրը փաթաթվեց իր տղային:

— Որքա՜ն մեծացե՜լ ես, որքա՜ն սևացե՜լ,—ասաց նա հպարտությամբ:

— Ես ամեն օր ծովում լողանում էի: Դրանից էլ մեծացել եմ ու սևացել,—պատասխանեց տղան:

— Լողանո՞ւմ էիր, ամեն օ՞ր,— կրկնեց սարսափած մայրը,— և տատիկը բեղ թո՞ւյլ էր տալիս...



Երևանի կայարանում նրանց դիմավորեցին Սամվելի ծնողները:





Տղան ազատվեց մոր գրկից ու կանգնեց նրա կողքին։ Նա իսկապես մեծացել էր, հասել մոր ուսերին։ Մոր աչքերին նայելով ասաց.

— Չէ՞ որ ես մեծացել եմ. հետո, տատին էլ էր գալիս մեզ հետ։

— Ձեզ հե՞տ. իսկ ովքե՞ր էիք դուք։

— Ես գրել էի նամակում, չէ՞... մեր հարևանի տղայի՝ Մամեդի մասին։ Նա շատ լավ էր լողանում. մեր ճամբարի չեմպիոնն էր։ Նա սովորեցրեց ինձ լող տալ։

Սամվելն այնպիսի հպարտությամբ սկսեց պատմել, որ մայրը առարկել չկարողացավ։ Նա երկար կխոսեր իր ընկերոջ՝ Մամեդի մասին, բայց մայրը կանգնեցրեց նրան.

— Հիմա տուն գնանք. դու այնտեղ մանրամասն կպատմես քո այդ Մամեդի մասին։

***

Սամվելը չկարողացավ հանգիստ քնել։ Նա մտածում էր հաջորդ օրվա մասին, երբ դպրոց պիտի գնար, և այս անգամ նստեր ոչ թե չորրորդ «բ» դասարան, այլ հինգերորդ։ Նա անընդհատ մտածում էր իր ընկերոջ՝ Հովիկի մասին, որին երկու ամիս չէր տեսել։ Ինչքա՜ն բաներ պիտի պատմեին իրար։

Հաջորդ օրը նա շուտ արթնացավ և շտապեց դպրոց։ Պարզվեց, որ շատ երեխաներ ժամանակից շուտ էին եկել։

Հովիկը հեռվից նկատեց Սամվելին և վազեց նրան ընդառաջ։

— Սամվե՛լ։

— Հովի՛կ։

Նրանք գրկախառնվեցին։ Իրար շատ էին կարոտել։ Նստեցին դպրոցի բակի նստարաններից մեկին։ Երբ մի քիչ հանգստացել էին և առաջին հուզումն անցել էր, Հովիկը հանկարծ հարցրեց։

— Դու նորից կնստե՞ս ինձ հետ։

Սամվելը զարմացած նայեց ընկերոջը։

— Իհարկե,— պատասխանեց նա։



— Դու նորից կնստե՞ս ինձ հետ։

Հովիկն անմիջապես չպատասխանեց. նա մտածեց, հետո ասաց.

— Ինձ թվաց, թե դու չես ուզում նստել. ախր ոչ մի նամակ չգրեցիր ինձ։ Դու Ծաղկաձորի մեր ճամբարի հասցեն գիտեիր, իսկ ես քո Բաքվի հասցեն չգիտեի։

Սամվելն զգաց, որ ընկերը վիրավորվել էր, բայց չուզեց սուտ խոսել, ինչ-որ պատճառաբանություն բերել։

— Հովի՛կ,— ասաց նա իր հանցանքը ընդունողի ձայնով,— այնքա՜ն գեղեցիկ էր Բաքում, այնքա՜ն տեղեր կային ման գալու, որ ժամանակ չէր լինում։ Մամեդի հետ շատ էինք ուզում գրել, բայց միշտ հետաձգում էինք մյուս օրվան...

— Մամեդն ո՞վ է։

— Բաքվի իմ ընկերը,— պատասխանեց Սամվելը զարմացած, որ Հովիկը չէր ճանաչում Մամեդին, իր կարծիքով այդ ամենահայտնի տղային։

— Դու նրան շա՞տ ես սիրում,— հարցրեց Հովիկը։

— Այո, շատ։ Նա ինձ լողալ սովորեցրեց. հետը ման ածեց ամեն տեղ։

Հովիկը կարծես չէր լսում նրան։

Սամվելը նոր միայն զգաց, թե ինչպիսի տոնով արտասանվեցին այդ բառերը։ Նա բռնեց ընկերոջ ձեռքը։

— Ես քեզ էլ եմ սիրում, Հովի՛կ, Մամեդին

էլ. ի՞նչ վատ է, որ։ Ես ու Մամեդը շատ էինք խոսում քո մասին և ուզում էինք քեզ Բաքու կանչել։

Նրանք մի րոպե լուռ մնացին։ Երկուսն էլ մտածում էին նույն նյութի մասին։ Հետո Հովիկը խոսեց ցածր ձայնով, կարծես ինքն իրեն։

— Երևի Մամեդը լավ տղա է...—հետո հանկարծ ավելացրեց.—կարծես, թե ես էլ եմ նրան սիրում։

Սամվելի դեմքը պայծառացավ. նա դրկեց Հովիկի ուսը։

— Արի՛ միասին նամակ գրենք նրան. պատմենք մեր դասերի, դրուժինայի մասին և ստորագրենք՝ «Հովիկ և Սամվել»։

— Նա էլ իր նամակը այսպես կսկսի. «Սիրելի Սամվել և Հովիկ»։

— Հենց այդպես էլ կլինի։

— Գարնանը մենք նրան Երևան կհրավիրենք. ցույց կտանք մեր քաղաքը, Պիոներների պալատը, Ստալինի մոնումենտը... միասին թատրոն կգնանք...

Տղաները դեռ երկար շարունակեցին խոսել։ Չէ՞ որ Հովիկը դեռ չէր ասել ամենագլխավորը՝ Ծաղկաձորում անցկացրած իր հրաշալի օրերի մասին։ Հանկարծ զանգը հնչեց։

Ուսումնական տարվա առաջին զանգը...

Տղաները հրճվանքով իրար նայեցին ու վեր թռան։ Նրանք վազելով միացան բակում շարվող աշակերտներին։ Նրանք ուրախությամբ նկատեցին, որ իրենց շարքը կանգնել է անցյալ տարվա հինգերորդ դասարանի տեղը, իսկ երրորդ դասարանն արդեն չորրորդ է դարձել։ Չկային նախկին տասներորդ դասարանցիները, այն մեծ տղաները, որոնք լավ ֆուտբոլ էին խաղում, միշտ փոքրերի համար անհասկանալի ինչ-որ թեմաների շուրջը։ Նրանց փոխարեն, արդեն մեծացած, լուրջ հայացքով կանգնել էին նախկին իններորդցիները։ Բոլորը առաջ էին շարժվել, բոլորը մի տարով մեծացել էին։

Կարծես նույնն էին մնացել դասատուները և բարի ժպտուն դեմքով դիրեկտորը, որ նրանց շուտով ուղարկելու էր դասարանները, դեպի ուսում, աշխատանք, դեպի նորանոր գիտելիքներ։

— Հիմա Մամեդն էլ է կանգնած շարքում... մեր մասին է մտածում, չէ՞,— կամաց փսփսաց Հովիկը։

— Այո,—պատասխանեց Սամվելը,—անպայման մտածում է։



# ՆՎԵՐՆԵՐԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ջով ճամբարում հանգստացանք,
Ավտոն նստած վերադարձանք։
Մեր դպրոցի պահակը ծեր
Մեզ հարց տվեց.—Ի՞նչ եք բերել։
Հապա, Հակո՛բ, մի ասա՛ ինձ.
Ի՞նչ ես բերել դու լեռներից։
— Բերել եմ ես որպես նվեր,
Տեսակ-տեսակ հանքաքարեր։
— Իսկ դո՞ւ, Մարո՛ւք։
— Մի արծվի ճուտ։
— Իսկ դո՞ւ, Ցոլի՛կ։
— Գույն-գույն ծաղիկ։
— Դո՞ւ, Վարդիթեր։
— Բզեզ, թիթեռ։
— Իսկ դո՞ւ, Դանել։
— Այնքան բանե՜ր...
— Այ շատ ապրե՜ք,
Իմ լավ բալեք...
Ինչ բերել եք,—ասաց պապին,—
Նվիրեցեք մեր դպրոցին։

# ՍԱՇԿԱ

ՎԵՍԵԼԻՆ ԱՆԴՐԵԵՎ

(Բուլղարական գրող, Դիմիտրովյան մրցանակի լաուրեատ)

Թրգմ. ՀՐ. ՌՈՒԽԿՅԱՆԻ



*Սաշկան տասնյոթամյա բուլղարահայ պարտիզանուհի էր (իսկական անունը Հերմինե Ռազգրադլյան)։ 1944 թվականի գարնանը, Մուրգաշի բարձունքներում ֆաշիստական ոստիկանության դեմ մղված անհավասար մարտում հերոսաբար զոհվեց, հավատարիմ մնալով Կոմունիստական պարտիային և իր ընկերներին։*

Լուսացավ: Պարզվեց արևելքն հեռվում:
Վաղորդյան զովն է սփռվում ահա,
Եվ կեչիների թավ սաղարթներում
Ցողն է սառում մաքո՜ւր, բյուրեղյա:
Մարգագետինն է մշուշում նիրհում,
Խուլ հարվածներ են իջնում չոր հողին.
Կեչիների տակ Սաշկան է փորում,
Շիրիմ է փորում իր համար լռին...
Նրա մոտ անխոս թիկնել են ահա
Մի դաժան լրտես ու մի ոստիկան:
Դրանց ճանկերից չի պրծնի Սաշկան.
Նրան է զամված քանի՜ աչք ագահ...
Ամբողջ մարմինը այրվում է ցավից.
Ծեծել են սաստիկ. լռել է, մերժել:
Աղջկա կրծքին բիրտ խարազանից
Տանջող կապտության ցանց է դրոշմվել:
Ինչպե՜ս են այրվում ոտքերը բոբիկ՝



*Կեչիների տակ Սաշկան է փորում...*

Ուռած, թարախոտ վերքերով պատված:
«Ավա՜ղ, մտքովս չէր անցնում նույնիսկ,
Որ ողջ-ողջ կընկնեմ ես ճանկը սրանց»:
Սեղմում է Սաշկան շուրթերն իր կապտած,
Որ չվհատվի հոգին ոխով լի:
«Ես մահվան առաջ կկանգնեմ վստահ...»:
Իսկ կյանքը այնքա՜ն քաղցր է ցանկալի...
«Մի՞թե պայքարն այս ինձ հետ կմեռնի...
Ո՛չ, կգան օրեր խաղաղ ու խնդուն...»:
Ի՜նչ ծանր է մեռնել ծաղկած մայիսին,
Հազիվ բոլորած տասնյոթ գարուն...
Ինչո՞ւ է կրծում շրթունքները չոր,
Որ ճաքճքվել են ու արյունոտվել,
Վառվում են ասես... Ծարավը տանջող,
Ա՜խ, սոսկալի է մահից առավել...
Մինչդեռ ճյուղերը ցած են խոնարհվում,
Մեղմ սոսափում են տերևները խիտ,
Այնպես թովի՜չ է լույսի տակ շողում
Ցողը զովասուն ու բյուրեղաշիթ...
Բայց մեծանում են կաթիլներն ահա...
Ո՛չ, սա աղբյուրի ջուր է անբասիր,
Որ կարկաչում է երգով արծաթյա...
Ինչպե՜ս է դյութում. Ձեռքերդ պարզիր...
Անզուսպ ցանկությամբ նա նետվեց, ծծե՜ց
Պապակ շուրթերով տերևները զով:
Բայց նույն վայրկյանին անողորմ մի ձեռք
Գետին շպրտեց նրան ողջ ուժով:
Ինչ-որ բան փայլեց, կուրացրեց նրան...
Եվ դահիճները վայրագ, մոլեգնած,
Տեղացին դարձյալ հարվածներ դաժան...
Չի թարթում Սաշկան աչքերն իր կապտած,
Սեղմված շուրթերն են մի պահ համրանում:
«Հը՞, ուզում էիր փախչե՞լ, կեղտոտ շո՛ւն» —
Անգութ լրտեսն է կատաղի ոռնում,
Ցնցում է ոտքով աղջկան դժգույն,

Դլխին անխնա հարվածներ իջնում:
...Եվ ահա հանկարծ աղջիկը տնքաց՝
Դեռևս սուզված թանձր խավարում:
Պարզվում է դարձյալ երկինքը մթնած,
Ամեն ինչ նորից է պայծառանում:
Փորում է Սաշկան... Արդեն հոգնեցին
Նրա մանկական ձեռքերը քնքուշ,
Արդեն մշուշ է իջնում աչքերին,
Ուժասպառ սիրտն է թպրտում անուժ:
Այս ի՞նչ խոհեր են ծանրանում սրտին,
Մի՞թե ապրել է այս ամենը նա.
Նեղ է գործարանը ծխախոտի.
Կախվում է հոգնած գլուխն աղջկա...
Ո՛չ, սա գյուղումն է, նկուղում խավար.
Սառը պատերն են անվերջ արտասվում,
Ծեծում են նրան, ծեծում անդադար...
Սաշկան տանջանքից մեռնել է ուզում...
Ահա Վիտոշը, սարը հայրենի.
Սաշկայի անհոգ ծիծաղն է զնգում,
Բույրն է սփռվում դալար խոտերի,
Ջերմացած հողն է արբեցած շնչում:
Երգեր են հնչում... Ժելեզկոն հուզված
Ահա կենսուրախ երգում է.— Յոհա՜ն...
«Ա՜խ, դա վաղուց էր, ամռանը անցած,



*Ժելեզկոն ընկած է արդեն խոցված...*

Երբ այս կողմ եկա շատերի նման...
Իսկ մա՞յրս... ինչպե՜ս է սպասում ինձ:
Ներիր ինձ, մայրի՛կ, սխալվեցի ես.
Քեզ չասի. չէ՞ որ լաց կլինեիր,
Իսկ հիմա... Գոնե հույսով կսպասես:
Մա՛յր իմ, թե հիմա կարողանայի,
Ես քեզ ինչքա՜ն ջերմ համբույր կտայի,

Կփարվեի քո ճերմակ մազերին,
Կհպվեի քո վշտոտ աչքերին...»:
Հանկարծ զոռոցն է նրան սթափեցնում.
«Հերիք է, կա՛նգնիր, ուղիղ մե՛զ նայիր»:
Դահիճներն իրար աչքով են անում:
Տիրեց լռություն... Լռությո՜ւն անծիր...
Բայց լսվեց դարձյալ նույն բառը. «Ասա՛»:
Եվ նշան բռնեց լրտեսը դանդաղ:
Համրացիր, լռիր, համբերիր, տոկա,
Մի՛ փոթորկվիր, սիրտ քնքուշ ու մատաղ:
«Որտե՞ղ են ձերոնք, ասա անպայման,
Թե չէ, իմացիր, վերջ կտանք կյանքիդ...»:
Արևն է շողում բարձունքից լեռան,
Հովն է սվսվում ճյուղերի մեջ խիտ...
Հարազատ պաշտպանն՝ արփին վաղորդյան
Ոսկեզօծել է Մուրգաշը հեռվում:
Այնտեղ են նրանք. խիզախ աղջկան
Եվ իրենց վերջին թեժ մարտն են հիշում:
...Սաշկան իր ջոկատն է տանում առաջ,
Լուռ են, միայն չոր ճյուղերն են խշշում:
Թխկոց է լսվում մոտերքում... Դարան...
Սաշկան, Ժելեզկոն են լոկ առջևում:
— Պառկի՛ր, լռությո՛ւն:
Բայց ուշ է արդեն.
Եռում է հողը թեժ գնդակներից...
Սաշկան կրակում է կատաղորեն,
Չհեռացնելով մատը ձգանից.
Աղջկան անզուսպ բերկրանք է պատել,
Թաց հողին հպված սիրտն է թրթռում:
«Խփե՛նք. ջոկատը դեռ չեն նկատել»:
— Դահիճնե՛ր, չկա ձեզ համար ներում...
Այս ի՞նչ է, արգե՞լք:
Ոչ, փամփուշտ չկա...
Ժելեզկոն ընկած է արդեն խոցված...
Բայց երբ թշնամին հասավ աղջկան,
Ջոկատը արդեն հեռու էր, փրկված...
...Թող հիմա խփեն, թող գերի վերցնեն,
Սպանեն. արդեն ջոկատը փրկվե՜ց...
Եվ Սաշկան գլուխն իր հպարտորեն
Բարձրացրեց, ապա մազերն հարդարեց:
«Մենք կանք ամեն տեղ.
Բալկանն է երգում,
Ռազմի երգերով գնում հաղթության,
Սպանեցեք ինձ...Սակայն մերոնք կա՛ն,
Բոլորիս համար
Վրեժ կլուծեն, վրեժ ահարկու...»:
Եվ չարագուշակ ու չոր կոհնչին

Արձագանք տվին հովիտներն անձայր,
Համրացան վշտից դաշտերը չորս դին,
Տիրեց լռություն, լռություն դարձյալ:
Երկինքն է իջել պաղ աչքերի մեջ,

Այնպես խաղա՜ղ է նա գրկում մահվան:
Այնտեղ, ուր սիրտը ընդմիշտ դադարեց,
Փայլում են դեռ տաք երկու շիթ արյան...

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

---

# ԱՄԱՌԱՅԻՆ ՀՈՒՇԵՐ

*Ա. ՍԵԿՈՅԱՆ*

*Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ*

*Վաչիկը օգոստոսի վերջերին վերաքննություն էր տալու թվաբանությունից: Հայրը՝ հովիվ Գրիգորը անեցիների ներկայությամբ հայտարարեց.*

*— Միևնույն է, դու սարի երես չես տեսնի, մինչև լավ չկրկնես ամբողջ անցածը:*

*Վաչիկն ավելորդ համարեց խնդրել: Նա շատ լավ գիտեր, որ հոր որոշումը ոչ մի դեպքում չէր փոխվի:*

*Հաջորդ օրը, ուշ երեկոյան, նա աչքի տակով լուռ հետևում էր, թե ինչպես հայրը, մայրը, մինչև անգամ փոքրիկ եղբայրը՝ Հարութը, եռանդով հավաքում, կապում էին իրերն ու անկողինները: Երբ լույսը նոր էր բացվում, անեցիների հետ միասին արթնացավ և Վաչիկը: Նրանք սկսեցին կապկպված իրերը դասավորել բակի առջև կանգնած սայլի վրա: Հարութը, որ գերազանց թվանշաններով էր փոխադրվել հաջորդ դասարան, ուղղակի բարկացնելու չափ ուրախ էր և իր անդուրեկան ձայնով ինչ-որ բան էր երգում քթի տակ:*

*Վերջապես երևաց կոլտնտեսության հոտը. մոր հետ Հարութն էլ տեղավորվեց իրերի վրա, և սայլը դանդաղ շարժվեց տեղից:*

*— Մի ամիս ժամանակ,— հրաժեշտ տալիս պաշտոնական տոնով ասաց հայրը:— Եթե կրկնած լինես, քեզ էլ կտանեմ:*

*Վաչիկը երկար ժամանակ նայում էր գնացողների հետևից: Հետո ոչխարների թողած փոշին էլ կորավ հեռվում, և նա թեքով մաքրեց աչքերը, «Ա՜խ, այդ վերաքննությունը...» մտածում էր նա:*

*— Իսկ դու մի՛ հուսահատվիր,— Վաչիկին մոտենալով ասաց մեծ քույրը.— եթե մի ամիս լուրջ պարապես, հայրիկը կկատարի իր խոստումը:*

*Հեշտ է ասելը: Ահա նա բացել է գիրքը և ոչ մի կերպ չի կարողանում հասկանալ, թե ի՞նչ է պահանջում խնդիրը: Երեկոյան նրանց տուն եկավ Սուրենը, Վաչիկի ամենամոտ ընկերը, որի հետ առաջին դասարանից նա նույն նստարանին էր նստել:*

*— Հակոբն էլ է թվաբանությունից կտրվել, էլի,— ասաց նա:— Երկուսիդ էլ կօգնեմ... և կհանձնեք: Ի՞նչ մի դժվար բան կա:*

*Դե, իհարկե, դժվար չէ կրկնելը. բայց երբ բոլորը գնում են հանգստանալու, խաղալու, և ինքդ շոգին հարկադրված պետք է պարապես, ա՛յ, դա է դժվարը: Համենայն դեպս ընկերոջ առաջարկը վերջնականապես զգաստացրեց Վաչիկին: Հենց նույն օրվանից նա սկսեց պարապել, նախօրոք կտրելով ու դեն շպրտելով ռոգատկան: Հիմա*



Վաչիկը երկար ժամանակ նայում էր գնացողների ետևից:



Բյուրականից հետո սկսվում էր դժվարին վերելքը...

արդեն ճնճղուկներն՝ ազատ ել ու մուտ կարող էին անել իրենց պատշգամբը։

Իրոք, կրկնությունն այնքան հեշտ չէր, ինչքան թվում էր։ Այ, օրինակ՝ № 65 խնդիրը նրան զբաղեցրեց համարյա մի ամբողջ օր։ Այդ օրը Սուրենը չերևաց, իսկ ինքը անհարմար էր զգում դիմել նրան. ինքը պետք է լուծի, իր սեփական ուժերով։ Բայց ինչո՞ւ, ինչո՞ւ չի ստացվում։ Նա լարում էր ամբողջ ուշադրությունը, նորից ու նորից սրում էր մատիտի ծայրը, վերադառնում նախորդ խնդիրներին։ Ե՞րբ էր բացատրել դա ուսուցիչը, որ ինքը չէր հիշում։ Վաչիկը նոր միայն գլխի ընկավ, որ իրեն դժվարության առաջ էին կանգնեցնում բոլոր այն խնդիրները, որոնց բացատրությունը նա չէր լսել դասին։ Բայց ամենակարևորն արդեն նվաճված էր. նա սովորել էր նստել և պարապել, ավելի ու ավելի քիչ դիմելով Սուրենի օգնությանը։

Հինգերորդ օրը նա ավարտել էր ամբողջ գիրքը, երբ հայտնվեց հայրը։ Սարից նա եկել էր ոչխարների համար դեղորայք տանելու։

Առանց շտապելու դիտելով խնդիրներով ու վարժություններով լցված տետրերը, հայրը գոհունակությամբ մի կողմ դրեց դրանք և կարգադրեց պատրաստվել։

— Ձմռանաս վերցնել ձմեռային հագուստները,— նկատեց նա։

«Հյուսիսային բևեռ հո չե՞նք գնալու», մտածեց Վաչիկը և միայն հոր ցանկությունը կատարած լինելու համար վերցրեց վերարկուն, բրդյա բաճկոնակը։

Տեսնելով, որ հայրը լրիվին պատրաստ է, Վաչիկն էլ թռավ ձիու թամբին և ոտքերը տեղավորեց նախապես վեր ձգած ասպանդակների մեջ։ Նրանք շարժվեցին։

Գյուղից դուրս մի քանի հոգի էլ միացան նրանց։ Ինչքան բարձրանում էին նրանք, այնքան օդը դառնում էր զով, մաքուր, գարնանային։ Բյուրականից հետո սկսվում էր դժվարին վերելքը դեպի Արագածի փեշերին փռված սքանչելի արոտավայրերը։

— Երեկ Հարութի դրած թակարդի մեջ մի աղվեսի ճուտ էր ընկել,— հանգիստ պատմում էր հայրը։

Ամեն այդպիսի պատմություն լսելիս, Վաչիկը ձեռքի փոքր ճիպոտով ավելի հաճախ էր խփում ձիուն։

Ճաշին, մի սարալանջում, աղբյուրի մոտ, նրանք նստեցին հանգստանալու։ Ծաղիկների ու խոտերի վրա փռեցին սփռոցը՝ մեջտեղ բերելով այն ամենը, ինչ ունեին։ Վաչիկից ընդամենը երկու տարով մեծ մի տղա, որ հարևան գյուղից էր, անմիջապես հանեց ալբոմը և սկսեց նկարել դեմը փռված տեսարանը։ Այստեղ ամեն ինչ նոր էր, հետաքրքիր, ծաղիկներն էլ արտասովոր մուգ ու պայծառ գույն ունեին։ Դեղին, ճերմակ և կապույտ ծաղիկներն անկրկնելի նախշերով գորգեր էին հյուսել սարալանջին։ Հապա թիթեռնե՞րը, որքա՞ն բազմերանգ էին և ինչքա՞ն խոշոր։ Մի մեղու պտտվեց հացի վրա, նստեց, մի պահ կնճիթով շոշափեց ու թռավ։

— Մեղրն էլ լավ կլինի այս տարի,— ձուն ու կանաչը լավաշի մեջ փաթաթելով խոսում էր գյուղացիներից մեկը։— Խոնավ եղանակը նպաստավոր է մեղվի համար։

Նա ելավ տեղից։ Բարձրացան նաև մյուսները։ Պատանիներն իսկույն թռան ձիերին և արագացրին ընթացքը։ Վաչիկի ձեռքերն այնպես էին սառել, որ սանձը դժվարությամբ էր պահում։ Նույնիսկ բերանի գոլորշին նկատելի էր։ Տղան աչքի տակով նայեց հոր կողմը և փաթաթվեց վերարկուի մեջ։ Եվ դեռ ինքը ոչինչ չէր ուզում վերցնել...

Մայրամուտի շողերի միջից վերջապես երևացին գոմերը։ Հեռվից ընդառաջ վազող երեխաների միջից պոկվեց և առաջ վազեց Արաբը՝ Վաչիկենց գամփռը։ Հասնելով ձիավորներին, նա սկսեց հոտոտել և պտտվել նրանց շուրջը։

Իրար հետևից ձորերը լցվում էին ամպի գորշ քուլաներով։ Վաչիկն առաջին անգամ էր իրեն ամպերից վեր տեսնում։ Մութն ընկնելուն պես սկսվեց ամպրոպը։ Կոլտնտեսականներն անասուններին արագությամբ քշեցին գոմերը։ Հեռվում ինչ-որ կրակոցներ լսվեցին։ Հովիվներն էին, որ շրջում էին գոմերի մոտ։ Հատկապես մառախլապատ օրերին գայլերը սիրում էին քարշ գալ այդ կողմերում։

Վաչիկն այլևս չկարողացավ դիմանալ և քնեց։

Մաքուր ու սառն առավոտը նոր էր քշել ամպերի վերջին քուլաները, երբ նա արթնացավ։ Հարութն արդեն մի գրոսանք էր կատարել և մինչև ծնկները շաղով թրջել էր ոտքերը։ Նա բոլորովին չէր մրսում։ Քամած մածուն և կաթի չորացրած սեր ուտելուց հետո Վաչիկը հետևեց տղաներին։

— Զգնա՞նք Սև լիճ,— խորամանկ ժպիտով նկատեց տղաներից մեկը։

— Վաչիկը չի դիմանա։ Նա դեռ չի սովորել երկար քայլել։

— Ինչո՞ւ չեմ դիմանա որ,— վիրավորանքը թաքցնելով, վրա բերեց Վաչիկը.— ես ամեն տեղ էլ պիտի գնամ։

— Լավ,— համաձայնեցին տղաները,— գնանք։ Բայց իմացիր՝ երեք օր ոտքերիդ ցավից պառկած ես մնալու։

Որքան բարձրանում էին նրանք, այնքան փոխվում էր ոչ միայն եղանակը, այլև տեսարանները. երկնագույն մշուշի միջից հասնող արևի շողերի տակ ադամանդի նման փայլփլում էին ձյան փոքրիկ շերտերը։ Կարծես բոլորովին ուրիշ աշխարհում գտնըվեին. ուրեմն Արագածի ստորին փեշերում խաղողն էր հասնում, իսկ բարձունքներում՝ աղբյուրները հենց ձյուներից էին գոյանում։

Մի անգամ, երբ Վաչիկը տղաների հետ գնում էր լողանալու, ձորից մի երիտասարդ որսորդ էր բարձրանում։ Աջ ձեռքով նա բըռնել էր գայլի բավական մեծ ձագի հետին ոտքերից և բերում էր գոմերի կողմը։ Գավանիկի առջևի մի թաթը փաթաթված էր վիրակապով. թակարդի հետքն էր դա։ Վաչիկը հետաքրքրված նայում էր, թե ինչպես կենդանին չտեսնված ճարպիկ շարժումներ էր անում որսորդի ձեռքից դուրս պրծնելու համար։ Նա կատաղորեն կրծոտում էր վիրավոր թաթը, իսկ որսորդը բոլորովին անտարբեր շարունակում էր առաջ քայլել։

Իսկ ինչպիսի՜ հետաքրքրական պատմություններ լսեց նա, որ պատմեցին հովիվները՝ վրանի տակ, ուշ երեկոյան։ Ինչպե՜ս ինքն սկսեց ավելի սիրել այդ ուժեղ, խիզախ մարդկանց։ Եվ ինչքա՜ն ավելի շատ կվայելեր այդ հեքիաթային բնության հաճույքը, եթե մի ամբողջ ամիս չկորցներ թվաբանությունը կրկնելով։

Սրանից հետո նա երբեք, ոչ մի դեպքում չի ծուլանա, ետ չի մնա իր ընկերներից...






Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Լ. Հուրունցն ավարտել է իր նոր վեպը՝ «Ոսկե առավոտ» վերնագրով: Այդ գիրքն ընթերցողին ծանոթացնում է այն պայքարին, որ Նգեր անունով հայկական փոքրիկ գյուղը մղել է Ադրբեջանում սովետական իշխանություն հաստատելու համար:

Տպագրում ենք մի հատված այդ վեպից:

Լույսը նոր էր բացվել, երբ պապս արթնացրեց ինձ:

— Դե, գրագե՛տ, վեր կաց. ժողովուրդն է պահանջում. քեզ համար գործ է բացվել:

Ես շտապ հագնվեցի: Պապս ձեռքս բռնեց և մենք դուրս եկանք տնից: Ավոն էլ եկավ: Մայրս ձեռքերը կրծքին խաչած կանգնել էր շեմքին ու երկար ժամանակ նայում էր մեր հետևից:

Մենք գնում էինք գյուղի միջով: Փողոցի անկյունում երևաց Աբեթի փոքրիկ կերպարանքը: Նա էլ քայլում էր Վասակի ձեռքը բռնած: Քնատ դեմքերին ժպիտ էր փայլում: Վասակը մի փոքր ետ մնալով մոտեցավ ինձ, կողս հրեց, ու հարցրեց.

— Այս ո՞ւր են տանում մեզ:

— Երևի պատժելու, երեկվա լուրերի համար,— աչքերը խորամանկորեն շողացնելով ասաց Ավոն:

Վարդազարի տան մոտ մեծ բազմություն էր հավաքվել: Այնտեղ ես նկատեցի Սեդրակին, մաղ գործող Սաքոյին, քուրդ Նաբիին: Ամբոխը ետ-ետ քաշվելով ինձ ու պապիս ճանապարհ տվեց:

— Կարդա,— ասաց պապս մատնացույց անելով մի թերթիկ, որ խմորով կպցրած էր պատին:

Թերթիկը բարձր էր կպցրած, տառերը չեր էին երևում: Չգիտեմ ով մի մեծ քար բերեց, դեմ տվեց պատին: Ինձ բարձրացրին, կանգնեցրին քարի վրա: Դարբին Կարա-Գերասիմը երկու ձեռքով բռնել էր իմ կռնատակերից, որ չընկնեմ:

«Գյուղացի եղբայրներ, հասել է ժամը...»— կապելով հազիվ կարդացի ես ու լռեցի:

— Հը՞, ի՞նչ եղավ,— անհանգիստ ձայն տվին այս ու այն կողմից.— թե քո խելքի բանը չի, ուրիշն էլ կա. Աբեթի թոռը կանգնած է այստեղ:

Ես դուրս պրծա դարբնի ձեռքերից ու մի կողմ փախա: Իմ տեղը կանգնեցրին Վասակին: Նույն դարբին Կարա-Գերասիմը հիմա էլ նրա կռնատակերից էր բռնել:

«Գյուղացի եղբայրներ,— քար լռության մեջ հնչեց Վասակի զրնգուն ձայնը,— հասել է ժամը, երբ դուք պետք է ձեր վրայից վերջնականապես դեն շպրտեք կալվածատեր-հողատերերի, խաների, բեկերի, հարուստների լուծը: Բանվորա-գյուղացիական կառավարության անունից ես ողջունում եմ ձեր արթնացումը և ձեր պայքարը: Հողը պետք է պատկանի ժողովրդին...»:

Դրանից հետո այլևս ոչինչ չէր կարելի հասկանալ: Մարդիկ բռնում էին իրար, գրկախառնվում, ինչպես այն օրը, երբ գյուղ հասավ թագավորին տապալելու լուրը:

— Բանվորա-գյուղացիական կառավարությունը, նշանակում է, մե՞րն է:

— Ա՛յ ինչ եմ ասե՜լ... այս իշխանությունը չի խաբի,— այս ու այն կողմից լըսվում էին ձայներ։

Աղմուկի վրա դուրս եկավ Վարդազարը՝ գլխաբաց ու առանց բաճկոնի, լայն շալվարը հաստ փորի վրա ուսակապերից կախված։

— Այս ի՞նչ ուրախություն է այսպես՝ առավոտ շուտ,— հարցրեց նա ճմլկոտալով ու հանգիստ ձևանալով։

— Մենք այստեղ այն հարցն ենք քննում, թե քո թիկունքը կդիմանա՞ այն բոլոր հարվածներին, որ մենք մտադիր ենք վերադարձնել քեզ,— ասաց մաղ գործող ուստա Սաքոն աչքով անելով մեկին։

Բազմության մեջ հռհռոց ընկավ։ Վարդազարը բեղերը կծելով շտապ հեռացավ։

— Ո՞վ էր գրողը, ջոկեցի՞ր,— հարցրի ես Վասակին, երբ տուն էինք վերադառնում։

— Ոնց չէ, անունս հո Արսեն չի։

Ավոն քայլում էր մեր հետևից, գլուխը վեր տնկած, ձևացնելով, թե այդ րոպեին իրեն ոչ մի բան չի հետաքրքրում, բացի այն միակ ամպից, որի եզրերը կարմրել էին արևածագի շողերից. ասես հրդեհված լիներ։

Ես ու Վասակը միասին էինք քայլում։ Երկուսիս էլ համակած ուրախությունը շատ մեծ էր։

— Ո՞վ էր գրել այդ թերթիկը, հիշո՞ւմ ես։

— Ոնց չէ։ Այդպիսի բանը կարելի՞ է մոռանալ։



Իմ տեղը կանգնեցրին Վասակին։

Ավոն դադարեց դիտել ամպը, որն արդեն վառվում էր ինչպես ամառվա եղեգնուտ։

— Կովկասի արտակարգ կոմիսար ընկեր Ստեփան Շահումյանը։

Ես ուզում էի հարցնել, թե ինչ բան է «Արտակարգ կոմիսարը» և ով է Ստեփան Շահումյանը, բայց պատահաբար աչքս ընկավ Վասակի դեմքին, և լեզուս կծեցի։

Սատանի ճուտ։ Նրա դեմքին շողում էր այնպիսի՜ մի հպարտ ժպիտ։ Դա երևի առաջացել էր իր անձի նկատմամբ ցուցաբերած հետաքրքրությունից։ Նրա հետ չէր կարելի խոսել առանց ինքնասիրության վերջին մնացորդը զոհաբերելու վտանգի։ Ավոն երևի այդ պատճառով ոչ մի խոսք չասաց։ Նա միայն երկու մատը բերանը դրեց, սուր սուլեց և նորից գլուխը վեր տընկեց, որոնելով ամպը, որն արդեն հալվել էր կանաչած բարձր երկնքում։

— Խաբարդա,— հնչեց մեր հետևից։ Մենք այս ու այն կողմ նետվեցինք։

Իր մոխրագույն շորորան նժույգը հեծած՝ մեր միջով քամու արագությամբ անցավ Վարդազարը։

Նժույգը իր հեծվորին տանում էր առանց ցնցումների։ Ասես նրա վրա մի թաս ջուր կար, և վախենում էր, թե այդ ջուրը կթափվի։

— Երևի Շուշի է գնում ստրաժնիկներ*) բերելու,— ասաց Ավոն։

— Կամ թե զայեժի տուն**),— իր իմացած բառով պարծենալ ուզեց Վասակը։

— Թող գնա,— լսվեց մեր հետևից։— Միայն թե կարծում եմ՝ իզուր է հոգնեցնում իր ձին. ստրաժնիկները վաղուց են ծլկել այնտեղից, ոչ մի շունչ չկա։

Մենք ետ նայեցինք։ Այնտեղ կանգնած էր Արամը և ժպտում էր։

— Այդ դու որտեղի՞ց գիտես, գրողա՛ց,— ասես մի հրամանով բոլորս միանգամից հարձակվեցինք իմաստունի վրա։— Չլինի՞ երազում ես տեսել։

Մեր սրտին դիպել էր, որ իմաստունը

---

*) Ստրաժնիկ—պահապան։

**) Զայեժի տուն—կոչվում էր այն շենքը, որտեղ իջևանում էին ցարական աստիճանավորները։

դարձյալ այնպիսի բաներ գիտի, որ մեզ համար անհայտ են։

— Ինչո՞ւ երազում։ Ուրիշ բան որ չլինի, քարտաշ Սարգսի հետ մի հարկի տակ ենք ապրում։

Եվ թեև պատճառաբանությունը շատ ծանրակշիռ էր, որովհետև քարտաշ Սարգիսը միշտ էլ ամեն բան առաջուց էր իմանում, բայց և այնպես մենք թերահավատությամբ ոտից-գլուխ չափեցինք նրան, իսկ Ավոն գլուխը թափ տալով ասաց.

— Փչում ես հա՛։

Արամն իրավացի էր. ստրաժնիկներ չէին եկել ո՛չ զայեժի տանը, որ մեզանից երեք գյուղ այն կողմ էր գտնվում, ո՛չ էլ Շուշիում։

Երեկոյան դեմ Վարդազարը վերադարձավ։ Նրա տան մոտ բազմությունն ավելի ու ավելի էր մեծանում։ Խոնավացած լայն թուղթը դեռ կարմրին էր տալիս։ Նրա տակ երևում էր ստորագրությունը. «Ստեփան Շահումյան»։

Վարդազարն անցավ բազմության միջով, սպիտակ փրփուրի մեջ թաղված ձիու սանձը ձեռքին։

— Տես թե ո՞նց է քշել խեղճին։

— Հաղորդվելու էր գնացել։ Կարծում է այն աշխարհում մեր տերտերը հաղորդ չի տա։

Բազմության մեջ ծիծաղ ընկավ։

— Հը՛, Վարդազա՛ր, ի՞նչ կա։ Ստրաժնիկներն էլ չե՞ն ուզում մեր կողմերը գալ։ Թե՞ նրանց ցույց է տված ճամփեն,— շինծու կարեկցությամբ հարցրեց սովորաբար լռակյաց մաղագործ ուստա Սաքոն՝ համարձակորեն կտրելով նրա ճամփան։

Վարդազարը թեթևակի մի կողմ հրեց նրան ճանապարհից, մոտեցավ պատին, որտեղ թերթիկն էր կպցրած։

— Ընկեր... քաղաքացինե՛ր,— դեպի բազմությունը շուռ գալով ասաց նա։— Եկեք հաշտ ու խաղաղ բաժանվենք իրարից։ Ոնց որ հասարակությունը կորոշի, այնպես էլ կանենք։ Ես հո հասարակության կամքին հակառակ չե՞մ։

— Հրեշտակի ձա՜յն,— լսվեց ամբոխի մեջ։

— Լավ է երգում,— վրա բերեց մի ուրիշը։

Վարդազարը կանգնած էր բազմության առաջ։ Նա էլի ինչ-որ բան ասաց, բայց այլևս ոչ ոք նրան չէր լսում։ Նա ոչ մի սարսափ չէր ազդում։

Մեկը ձեռքը դրեց նրա ուսին։ Իմ կողքին կանգնած «իմաստունը» Վարդազարի կողմն աչքով անելով՝ հարցրեց.

— Հը՛, ո՞ւմ կողմը զոռեց։

Ես լուռ սեղմեցի նրա ձեռքը։

Ամբողջ օրը Նգերում հենց մի գլուխ խոսում էին Բաքվում ստեղծված նոր իշխանության մասին։ Մարդիկ հավաքվում էին խմբերով։ Ամենուրեք աշխուժություն էր տիրում։

Երեկոյան հարևան գյուղից եկավ մեր բիրվա Բոյուկ-Քիշին։

— Նորություն լսե՞լ եք,— դեռ շեմքից գոչեց նա։ Բանից դուրս է գալիս, որ Արդուլլա բեկը մեզանից ու ձեզանից ավելի անհամբե՞ր է սպասելիս եղել սովետական իշխանությանը։ Բաքվի կոմունայի պատվին նա երկու ոչխար մորթեց և ամբողջ գյուղին հյուրասիրեց։

— Մերը նույնպես,— պատասխանեց պապըս։

Եվ երկուսն էլ կողերը բռնած երկար-երկար ծիծաղում էին։

Մենք գնում ենք ծանոթ կածանով։ Հարուստներ են հանդիպում։ Այժմ մենք կարիք չունենք նրանց ճանապարհ տալու։ Հիմա նրանք ձիով չեն սլանում և մեզ վրա ցեխ չեն շպրտում, այլ քայլում են ոտքով, աջ ու ձախ գլուխ խոնարհելով, ամեն հանդիպողի ձեռքը սեղմելով։ Ահա Վարդազարը կանգ առավ մաղ գործողի արհեստանոցի առաջ։

— Բարի օր քեզ, ուստա՛ Սաքո,— ասաց նա փափախը բարձրացնելով։

— Գիտե՞մ, գիտեմ, թե որքան ես բարի ցանկանում ինձ, Վարդապա՛ր,— պատասխանեց ուստա Սաքոն,— միայն թե հիշիր, անուշի՞կս, պարտքը տալով՝ մեղքը լալով։

Արյունը Վարդազարի գլուխը խփեց. բայց նա լուռ ու մունջ հեռացավ։

Ես քայլում եմ Վասակի կողքով և մտածում եմ Շահումյանի մասին։

Դղրդում է բրուտների շարքը։ Որքա՞ն ուրախ է հիմա այստեղ, որքա՞ն բարձր է տա-

բացվել նրա վրա պայծառ երկինքը, ի՞նչ գեղեցիկ է թվում հիմա այն ծուռ բոխին իր աղքատիկ պսակով։

Վասակն ու ես ձեռք-ձեռքի տված վազում ենք դեպի վեր, դեպի բրուտների կավահանքը, և զեփյուռը ծածանում է մեր մազերը։



## ԼԱԼԱՅԻ ԵՎ ՔՈՒՉԻԿԻ ՀԱՄԱՐ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Լալան ունի երկու տոտիկ՝
Մեկ, երկու,
Լալան ունի երկու կոշիկ՝
Մեկ, երկու.
Կարմիր գույնի,
Փայլուն քթով,
Նախշուն կապով,
Պուպուշ բանտով։
Լալան հագնի
Կարգին-սարքին,
Հագնի, գնա
Զբոսանքի։
Բայց մեր քուչին,
Փոքրիկ քուչին
Նոր է եկել
Դռան տակին.
Դրսում ցեխ է,
Ցուրտ է հիմի,
Իսկ խեղճ քուչին
Կոշիկ չունի։
Եկեք ասենք մեր հայրիկին
Կոշիկ բերի և քուչիկին։
Քուչին ունի չորս տոտիկ՝
Մեկ, երկու, երեք, չորս.
Հարկավոր է չորս կոշիկ
Մեկ, երկու, երեք, չորս.
Կարմիր գույնի,
Փայլուն քթով,
Նախշուն կապով,
Պուպուշ բանտով։
Լալան հագնի,
Քուչին հագնի,
Հագնեն գնան
Զբոսանքի...





# ԼԵՎ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ ՏՈԼՍՏՈՅ

*(Ծննդյան 125-ամյակի առթիվ)*

*ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Մոսկվայից երկու հարյուր կիլոմետր հարավ, Տուլա քաղաքի մոտերքում մի կալվածք կա: Այդ կալվածքը աշխարհում շատ ու շատ մարդկանց է հայտնի: Դա Յասնայա Պոլյանան է: Յասնայա Պոլյանայում 1828 թվականի սեպտեմբերի 9-ին ծնվեց ռուս հանճարեղ գրող Լև Նիկոլաևիչ Տոլստոյը:

Տոլստոյը մեկ ու կես տարեկան հասակում զրկվեց մորից, իսկ ինը տարեկան էր, երբ մեռավ նաև հայրը:

Փոքրիկ Լյովայի և նրա երեք եղբայրների մանկությունն անցնում է Յասնայա Պոլյանայում, որը գտնվում էր խիտ անտառի եզրին, ուներ հսկայական մի գրոսայգի և արհեստական լճակ: Այստեղ, բնության գրկում էլ նրանք խաղում էին ու վազվզում, ուրախանում էին ու տխրում, երազում ապագայի մասին, փնտրում հեքիաթային «կանաչ փայտիկը», որի միջոցով իբրև թե հնարավոր էր մարդկանց համար բաց անել երջանկության գաղտնիքը:

Յասնայա Պոլյանայում Տոլստոյը մոտիկից ծանոթացավ ճորտ գյուղացիների հետ, տեսավ նրանց ծանր, ուժից վեր աշխատանքը, լսեց նրանց երգերը և սիրեց գյուղացուն:

1837 թվականից մինչև 1841 թվականը Տոլստոյները մերթ ապրում են Մոսկվայում, մերթ՝ Յասնայա Պոլյանայում. իսկ հետո փոխադրվում են Կազան՝ Լև Տոլստոյի հորաքրոջ մոտ: 1844 թվականին Լև Նիկոլաևիչը մտնում է Կազանի համալսարանը: Սովորում է սկզբում արևելյան լեզուների, ապա իրավաբանական ֆակուլտետում, սակայն դրանցից և ոչ մեկը չի ավարտում: Նա վերադառնում է Յասնայա Պոլյանա և զբաղվում ինքնակրթությամբ: Մեկ-երկու տարում ուսումնասիրում է իրավաբանությունը և բժշկությունը, մաթեմատիկան և ֆիզիկան, մի շարք լեզուներ, ուսումնասիրում է երաժշտությունն ու նկարչությունը:

Դեռ վաղ մանկությունից Լև Տոլստոյը մեծ սեր ուներ դեպի ընթերցանությունը: Գրքեր կարդալով նա իր միտքը զարգացնում էր բազմակողմանիորեն: Այդ մասին են վկայում նրա գրադարանի հազարավոր գրքերը. գրեթե բոլորի վրա Տոլստոյը նշումներ է թողել:

Տոլստոյը հանգիստ չգիտեր: Ամեն ինչ, որ նա սկսում էր, կատարում էր մեծ հափշտակությամբ:

Այդպիսի հափշտակությամբ էլ նա աշխատում էր իր գրական գործերի վրա: Գրել նա սկսեց Կովկասում, երբ գտնվում էր զինվորական ծառայության մեջ: Այստեղ 1852 թվականին գրեց իր առաջին ստեղծագործությունը՝ «Մանկություն» վիպակը, որը նույն տարին տպագրվեց Նեկրասովի «Սովրեմեննիկում»՝ ժամանակի ռուսական ամենաառաջավոր ամսագրում: Այնուհետև նույն ամսագրում նա տպագրում է «Պատանեկություն» վիպակը: Այս գրքերը իրենց տեսա-

կով ռուս գրականության մեջ նորություն էին: Տոլստոյը մեծ վարպետությամբ ցույց է տալիս, թե ինչպես է աստիճանաբար ձևավորվում մարդու բնավորությունը: Հետագայում նա գրեց նաև «Երիտասարդություն» վիպակը, իր ուսանողական տարիների մասին:

1854 թվականի նոյեմբերին Տոլստոյը փոխադրվում է Սևաստոպոլ, որտեղ մնում է մինչև Սևաստոպոլի հերոսական պաշտպանության վերջը, մասնակցում է կռիվներին և աչքի է ընկնում խիզախությամբ. նա մարտնչում էր նշանավոր չորրորդ բաստիոնում:

Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը Տոլստոյին երեք նոր պատմվածքների նյութ տվեց, որոնք տպագրվեցին «Սևաստոպոլյան պատմվածքներ» ընդհանուր վերնագրի տակ: Բոլորը զգացին, որ գրականության մեջ է մտնում մի մեծ տաղանդ: «Այս գինին դեռ երիտասարդ է, իսկ երբ կհասունանա, նրանից աստվածներին արժանի խմիչք կստացվի» — այն ժամանակ ասել է Տուրգենևը Տոլստոյի մասին:

Շուտով Տոլստոյը թողնում է զինվորական ծառայությունը և վերադառնում Պետերբուրգ: Այստեղ նա ծանոթանում է գրողների հետ: Նրան առանձնապես ջերմորեն են ընդունում «Սովրեմեննիկ» ամսագրի շուրջը համախմբված առաջավոր գրողները: Բայց Տոլստոյը հեռու էր ռևոլյուցիոն դեմոկրատական հայացքներ ունենալուց:

1857 թվականին Տոլստոյը մեկնում է արտասահման: Արտասահմանում բուրժուական կուլտուրան նրա վրա բացասական տպավորություն է թողնում: Ամբողջովին հիասթափված այդ կուլտուրայից նա վերադառնում է հայրենիք:

Տոլստոյը կարծում էր, թե կարելի է նորտ գյուղացիների կյանքը լավացնել, նրանց նորտությունից ազատելու միջոցով: Նա սխալմամբ կարծում էր, թե կալվածատերերի և գյուղացիների հարաբերությունները լավացնելու համար բավական է, որ գյուղացիները լուսավորվեն: Տոլստոյը 1859 թվականից սկսում է աշխատել Յասնայա Պոլյանայում իր բացած դպրոցում: Այդտեղ էին սովորում գյուղացիների երեխաները: Տոլստոյը տեսնում է, որ նրանք նույնքան ընդունակ են, որքան ուրիշները, սիրում է և կապվում նրանց հետ:

1861 թվականին Լև Նիկոլաևիչը ջերմորեն պաշտպանում է գյուղացիների իրավունքները: Ցարական կառավարությունը սկսում է կասկածանքով նայել նրան: Մի անգամ նրանք նույնիսկ խուզարկում են մեծ գրողի բնակարանը և դպրոցը:

Լև Նիկոլաևիչը շատ հասարակ էր ապրում: Ծագումով կոմս էր, բայց հագնում էր գյուղացու հասարակ շորեր, աշխատում էր դաշտում, հաճախ գութանի մանը բռնած իր կալվածքի հողերում վար էր անում:

1864—69 թվականներին Տոլստոյը գրում է իր հռչակավոր «Պատերազմ և խաղաղություն» վեպը, որը նրան համաշխարհային անուն բերեց: Մեծ գրողն այդ վեպում հուզիչ կերպով պատմում է, թե ինչպես ռուս մարդիկ 1812 թվականի Հայրենական պատերազմում հայրենասիրությամբ տոգորված՝ խիզախության և հերոսության չտեսնված օրինակներ էին ցույց տալիս:

«Պատերազմ և խաղաղությունը» հայրենասիրական մի անման վեպ է, որը ապացուցում է ռուս ժողովրդի սխրագործությունը նրա պատմության նշանակալից էպոխաներից մեկում:

«Պատերազմ և խաղաղությունը» թարգմանված է աշխարհի շատ լեզուներով: Ամբողջ աշխարհին հայտնի են նաև նրա մյուս գործերը՝ «Աննա Կարենինան», «Հարությունը», «Հաջի Մուրադը», «Պոլիկուշկան», «Տերն ու ծառան», «Կազակները» և ուրիշ շատերը: Նրա թողած գրական ժառանգությունը շատ մեծ է:

Իր ստեղծագործություններում Տոլստոյը մերկացնում էր կապիտալիստական կեղծիքն ու սուտը, ցարի, եկեղեցու և նրանց կողմնակիցների երեսպաշտությունը: Մի հետադիմական թերթի խմբագիր 1901 թվականին գրում է իր օրագրում. «Մեզ մոտ երկու թագավոր կա՝ Նիկոլայ երկրորդը և Լև Տոլստոյը: Ո՞վ է նրանցից ուժեղը: Նիկոլայ երկրորդը Տոլստոյին ոչինչ չի կարող անել, չի կարող նրա գահը տատանել, մինչդեռ Տոլստոյը, անկասկած, տատանում է Նիկոլայի և նրա դինաստիայի գահը»:



*Լ. Ն. Տոլստոյի աշխատասենյակի կենտրոնական մասը: Գրասեղանի վրա առարկաները դասավորված են այնպես, ինչպես եղել են Յասնայա Պոլյանայից նրա հեռանալու օրը՝ 1910 թվականի հոկտեմբերի 28-ին:*



*Լ. Տոլստոյի գերեզմանը Յասնայա Պոլյանայում։*

Տոլստոյի ստեղծագործությունները, հայացքները լի են հակասություններով։ Այդ մասին նշել է Վլադիմիր Իլյիչ Լենինը Տոլստոյի մասին իր գրած հոդվածներում։ Մի կողմից մեծ գրողը տալիս է ռուսական իրականության ռեալիստական պատկերը, մյուս կողմից մնում էր, որպես աստվածապաշտ կալվածատեր. մի կողմից նա ազնվորեն անխնա քննադատում էր հասարակական կեղծիքն ու սուտը, կապիտալիստական ճնշումը, մյուս կողմից քարոզում էր «չարին չհակառակել»։ Այդ պատճառով էլ Տոլստոյը չէր հասկանում բանվորական շարժման դերը սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Մարդկանց անհավասարությունը, անարդարությունը հաղթահարելու ճանապարհը նա սխալմամբ որոնում էր մարդկանց բարոյական վերածնման մեջ և ոչ թե ռևոլյուցիայում։

Կյանքի վերջին տարիներին մեծ գրողը հաճախ է սկսում մտածել ընտանիքից, պաշտոնական հասարակությունից հեռանալու մասին։ Նա մտածում էր գնալ որևէ տեղ, և ապրել գյուղացու հասարակ կյանքով։ Դրանով, նա կարծում էր, թե կազատվի այդ կապանքից։

1910 թվականի հոկտեմբերի 28-ի գիշերը նա գաղտնի հեռանում է տնից։ Սակայն նրա քայքայված առողջությունը չէր կարող դիմանալ երկար ճանապարհորդության և 1910 թվականի նոյեմբերի 7-ին նա մեռավ Ռյազանո-Ուրալյան երկաթուղու Աստապովո (այժմ Լև Տոլստոյ) կայարանում։ Տոլստոյի մահվան լուրը տարածվեց ամբողջ աշխարհում։ Դա մարդկության ամենածանր կորուստներից մեկն էր։

Տոլստոյը թաղվեց Յասնայա Պոլյանայի անտառում, զառիթափի մոտ, որտեղ նա մանկության տարիներին փնտրում էր «կանաչ փայտիկը», ժողովրդի երջանկության գաղտնիքը։

Մեծ է Լև Տոլստոյի դերը ռուս և համաշխարհային գրականության մեջ։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ Տոլստոյի ստեղծագործությունները միշտ կգնահատվեն և կկարդացվեն մասսաների կողմից, երբ նրանք իրենց համար կստեղծեն կյանքի մարդկային պայմաններ։ Լենինը Գորկուն Տոլստոյի մասին մի անգամ հարցրել է.

— Ո՞ւմ կարելի է Եվրոպայում նրա կողքին դնել։

Եվ ինքն իրեն պատասխանել.

— Ոչ ոքի։

Իսկ Մաքսիմ Գորկին գրում է. «Ով չգիտի Տոլստոյին, նա չի կարող իրեն իր երկիրն իմացող մարդ համարել և չի կարող իրեն համարել կուլտուրական մարդ»։

# ՖԻԼԻՊՈԿ

*Լ. ՏՈԼՍՏՈՅ* *Նկ. Ան. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

*Կար մի փոքրիկ տղա՝ անունը Ֆիլիպ։ Մի անգամ երեխաները գնացին դպրոց։ Ֆիլիպը գլխարկը վերցրեց և ուզեց ինքն էլ գնալ, բայց մայրն ասաց նրան.*

*— Ո՞ւր ես ուզում գնալ, Ֆիլիպո՛կ։*

*— Դպրոց։*

*— Դու դեռ փոքր ես, մի՛ գնա,— և մայրը պահեց նրան տանը։*

*Երեխաները գնացին դպրոց։ Հայրն առավոտից գնացել էր անտառ, մայրը գնաց օրավարձով աշխատելու։ Տանը մնացին Ֆիլիպն ու տատը՝ վառարանի վրա։*

*Ֆիլիպը մենակ տխրում էր. երբ տատը քնեց՝ նա սկսեց գլխարկը փնտրել։ Բայց չգտավ։ Այդ ժամանակ վերցրեց հոր գըլխարկն ու գնաց դպրոց։*

*Դպրոցը գյուղի ծայրին էր, եկեղեցու մոտ։ Երբ Ֆիլիպն անցնում էր իրենց թաղով՝ շները նրա վրա չէին հաչում. նրանք ճանաչում էին Ֆիլիպին։ Բայց երբ մոտե-*

ցավ օտար-անծանոթ բակերի՝ տեղից վեր թռավ մի փոքրիկ շուն ու հաչեց։ Նրա հետևից վեր կացավ մի մեծ շուն՝ Վոլչոկ անունով։ Ֆիլիպն սկսեց վազել, շները նրա հետևից։ Ֆիլիպը ճչաց, սայթաքեց և ընկավ։ Տնից դուրս եկավ մի գյուղացի, շներին քշեց և ասաց.

— Այդպես մենակ ո՞ւր ես վազում, ա՛յ փոքրիկ։

Ֆիլիպը ոչինչ չասաց. փեշերը հավաքեց ու վազեց առաջ։ Վազեց հասավ դպրոց։ Մուտքի առաջ ոչ-ոք չկար, բայց դպրոցում, լսվում էր՝ աղմկում էին երեխաները։ Հանկարծ Ֆիլիպը վախեցավ։ «Իսկ եթե ուսուցիչն ինձ չընդունի՞ ու քշի»։ Ու սկսեց մտածել, թե ինչ անի։ Ետ գնար՝ շները կկծեին, դպրոց մտներ՝ ուսուցչից էր վախենում։

Դպրոցի կողքով դույլը ձեռին մի կին անցավ և, Ֆիլիպին նկատելով, ասաց.

— Բոլորը սովորում են, դու ինչո՞ւ ես այստեղ կանգնել։

Եվ Ֆիլիպը մտավ ներս։

Հաշտում գլխարկը վերցրեց ու դուռը բաց արավ։ Ընդարձակ սրահը լիքն էր երեխաներով։

Ամենքը մի բան էին գոռում. և ուսուցիչը կարմիր շարֆը վզին անցնում-դառնում էր նրանց մեջ։

— Դու ի՞նչ ես ուզում,— գոռաց ուսուցիչը Ֆիլիպի վրա։

Ֆիլիպը գլխարկը պինդ բռնեց և ոչինչ չասաց։

— Ասա տեսնեմ՝ դու ո՞վ ես։

Ֆիլիպը լռում էր։

— Դու հա՞մր ես, ի՞նչ է։

Ֆիլիպն այնպես վախեցավ, որ էլ խոսել չկարողացավ։

— Դե ուրեմն գնա տուն, եթե խոսել չես ուզում։

Ֆիլիպը սրտով կուզեր մի բան ասել, բայց վախից կոկորդը չորացել էր։ Նա նայեց ուսուցչին և լաց եղավ։ Այդ ժամանակ ուսուցիչը խղճաց նրան, շոյեց նրա գլուխը և հարցրեց երեխաներին, թե ո՞վ է այդ փոքրիկ տղան։



— Այդպես մենակ ո՞ւր ես վազում, ա՛յ փոքրիկ։

— Սա Ֆիլիպոկն է, Կոստյուշկինի եղբայրը. վաղուց ուզում է գալ դպրոց, բայց մայրը չի թողնում. դրա համար ծածուկ է եկել։

— Դե որ այդպես է նստիր եղբորդ կողքին, իսկ ես մորդ կխնդրեմ, որ քեզ թողնի։

Եվ ուսուցիչն սկսեց տառեր ցույց տալ Ֆիլիպին, բայց Ֆիլիպը տառերը ճանաչում էր արդեն և մի քիչ էլ կարդալ գիտեր։

— Հապա, մի անունդ կազմիր։

Ֆիլիպն սկսեց.

— Ֆը-ի-լի-պո-կը — Ֆիլիպոկ։

Բոլորը ծիծաղեցին։

— Կեցցե՛ս,— ասաց ուսուցիչը։— Իսկ ո՞վ է քեզ կարդալ սովորեցրել։

Ֆիլիպը ոգևորվեց, համարձակություն ստացավ և ասաց.

— Եղբայրս՝ Կոստյան։ Ես շատ աչքաբաց եմ. մի անգամից բոլորը հասկացա։ Ես շատ ճարպիկ եմ։

Այդ օրվանից Ֆիլիպոկն սկսեց երեխաների հետ գնալ դպրոց։

Թարգմ. ԱՏ. ՋՈՐՅԱՆԻ



# ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՉԿԱ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Մեր մեծ Հայրենիքում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ սովետական երեխաները ապրում են ուրախ ու երջանիկ կյանքով: Նրանց համար ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները սովորելու և իրենց ընդունակությունները զարգացնելու: Մինչդեռ կապիտալիստական երկրներում երեխաները մանկություն չունեն: Նրանք տառապում են սովի, աղքատության և կարիքի ճիրաններում: Աշխատավորների երեխաների առաջ փակված են դպրոցների և այլ մանկական հիմնարկների դռները:

Այս համարում տպագրում ենք ականատես նավաստիների պատմածները և այլ նյութեր՝ գաղութային ու կապիտալիստական երկրների երեխաների ծանր կյանքի մասին, ինչպես նաև սովետական մի քաղաքի՝ Երևանի երեխաների երջանիկ առօրյայի մասին:

## «ԹՈՒՅԼ ՏՎԵՔ, ՄՍՅՈ»

*(«Արգուն» նավի մեխանիկ Վ. Կ. Չումանչենկոյի պատմածից)*

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Մի քանի օր մենք կանգ առանք Մարսելում: Այնտեղ ես ծանոթացա տեղական բնակչության ամենից աղմկոտ և ամենակենսուրախ մասի՝ Մարսելի փողոցների երեխաների հետ: Պատառոտված հագուստներով նրանք խմբերով քափառում են քաղաքում հաց փընտրելու համար: Ես տեսա սիգարետ ծխող տասը տարեկան երեխաների: Բավական է, որ ինչ-որ փարբեր ձեռքից երևաս փողոցում: Եվ արդեն մեկը մյուսին հրելով ու առաջ ընկնելով, վրա է տալիս սոված երեխաների խումբը:

— Թույլ տվեք, մսյո՛...

Երեխաները դիմավորում են ամեն մի մարդատար նավ, որպեսզի մինչև տակսու կայանը տանեն հարուստների ծանր ճամպրուկները և այդպիսով հաց վաստակեն:

Ես կարողացա խոսել պատանի «զավրոշներից» մեկի հետ:

Նրան հարվածեց ամերիկացի սպան, տղան ընկավ փողոցի սալահատակի վրա և դեմքը ջաջախվեց: Ժանդարմը այնպիսի արտահայտություն ընդունեց, որ իբր դեպքը իրեն չի վերաբերում: Մենք երեխային բարձրացրինք գետնից:

— Ի՞նչ բանի համար նա քեզ հարվածեց,— հարցրի ես:

— Ես նրանից սիգարետ խնդրեցի:

— Մի՞թե դու ծխում ես:

— Օ՛, ոչ մսյո՛:

— Հապա էլ ինչո՞ւ ես մուրացկանություն անում:

— Ներեցեք, մսյո՛, դուք վերջին անգամ ե՞րբ եք հաշել:

Ուրիշ ոչինչ չմնաց հարցնելու. այդպես էլ ամեն ինչ պարզվեց:

Երեխան վաճառել էր իր խնդրած սիգարետը: Այդ երեխայի անունը Կլոդ էր: Նա երբեք և ոչ մի տեղ չէր սովորել, նա երբեք չէր հանգստացել, նա ոչինչ չէր տեսել, բացի Մարսելի փողոցներից: Նրա հայրը հավահանգստի բանվոր է. տղան օգնում է հորը, ընտանիքին կերակրելու:



*...տղան ընկավ փողոցի սալահատակի վրա...*

Եվ հիմա, երբ ես լսում եմ այն մասին, որ կապիտալիստական երկրներում միլիոններ են վատնվում նոր պատերազմ նախապատրաստելու համար, ես լսում եմ մի կանչ «թույլ տվեք, մսյո՛»... և ջախջախված դեմքով այն տղային:

# «ՄԱՐԳԱՐԻՏԸ»

(«Սլավա—5» կետորսական նավի երկրորդ մեխանիկ Ի. Մ. Կոլոսովի պատմածից)

Ոմանք ասում են, որ Կուբան, «Անտիլյան կղզիների մարգարիտն է», այդ ճիշտ չէ։

Ես եղել եմ Կուբայում, ես գիտեմ՝ ինչ է Կուբան։ Այնտեղ կան բարձր արմավենիներ, հին շենքեր, պալատներ, բայց այդ բոլորը միայն ցուցանակ է։

Կուբան՝ դա շաքարի պլանտացիաներն են, որտեղ պետք է աշխատել արշալույսից մինչև արշալույս, որպեսզի վաստակել տասնհինգ ցենտ՝ մի բուտերբրոդի արժեք։ Կուբան՝ դա անլույս աղքատություն է, Կուբան՝ այդ սով է առանց ելքի...



— Իսկ ինչո՞ւ սեղանի տակ...

Մի անգամ իմ ընկեր նավաստիների խմբի հետ ես ճաշում էի նավահանգստի ռեստորանում։ Հանկարծ զգացի, որ ինչ-որ մեկը զգուշաբար շոշափեց իմ կոշիկները. նայեցի սեղանի տակ։ Ինը տարեկան մի երեխա մատներով մաքրում էր կոշիկներս։

— Դու այդտեղ ի՞նչ ես անում, ինչո՞ւ ես մտել սեղանի տակ,— զարմացա ես։

— Օ՜, մի՛ բարկացեք պարոն, ես ձեր կոշիկներն եմ մաքրում։

— Իսկ ինչո՞ւ սեղանի տակ...— տարակուսեցինք մենք։

— Սևերին չի թույլատրվում սպիտակների կոշիկները մաքրել։ Եթե ժանդարմը տեսնի՝ կծեծի։

Եվ այնպիսի ոչ մանկական տխրություն կար այդ ինը տարեկան կուբացու աչքերում, որ մարդու սիրտը սեղմվում էր ցավից։

Հետո նա պատմեց իր մասին։ Դրա մեջ անսովոր ոչինչ չկար։ Հարյուրավոր այդպիսի պատմություններ մենք կարող ենք լսել արտասահմանյան նավարկումների ժամանակ։

Երեխայի հայրը երկար ժամանակ եղել է գործազուրկ, իսկ հետո, վերջիվերջո աշխատանք է գտել։ Զվարճացնելով ամերիկյան տուրիստներին, նա ծովում կռվում էր շնաձկների հետ, զինված լինելով միայն դանակով։ Դա շատ վտանգավոր է կյանքի համար. բայց դրա դիմաց քիչ էին վճարում նրան։ Մի անգամ ինչպես եղավ նա վրիպեց... և տղան մնաց առանց հոր։

Այժմ նա ամենամեծն է ընտանիքում. նա պետք է կերակրի եղբորը և փոքրիկ քրոջը։ Այժմ դուք հասկանում եք, թե ինչու հնարավոր չէ Կուբան կոչել «մարգարիտ»։

# ՍՈՎԸ

(Առաջին կարգի կապիտան Գ. Ա. Օլիշկևիչի պատմածից)

Նավարկության քսանիններորդ օրվա առավոտյան երևացին Հնդկաստանի ցածր ափերը։ Շուտով սկսեցին պատկերվել Մադրաս քաղաքի կառուցումները։

Զրնգում է խարիսխի շղթան և մեր «Կարագանդա» նավը կանգ է առնում խարսխակայանում, նավահանգստից մեկ ու կես մղոն հեռավորության վրա։

Շուտով մեր ուշադրությունը գրավում է 10—15 անձև առարկաներից բաղկացած անսովոր մի նավատորմիղ։ Նավատորմիղը ուղևորվում է դեպի մեր նավը։ Մեր միջև եղած տարածությունը գնալով կրճատվում է։ Վերջապես մենք տեսնում ենք, որ երկուերեք անտաշ գերաններից մի կերպ սարքված լաստի վրա երեխաներ կան։ Նրանք պպզած կամ ոտները ջրի մեջ կախած, տախտակի կտորներով ուժեղ թիավարում են և ինչ-որ բարձր գոռում։ Ահա նրանցից առաջինները լողալով մոտենում են նավեզրին։ Այդ տեսակ լաստերով հազիվ թե հնարավոր լինի անվտանգ լողալ թեկուզ և փոքր գետի վրա, իսկ երեխաները դուրս են եկել բաց ծով, որտեղ ամեն բոպե կարելի է փոթորիկ սպասել, որտեղ ագահ շնաձկները

որս են ման գալիս: Մեզ համար արդեն պարզ է, թե ինչ ուժ է ղեկավարում այդ անվեհեր, փոքրիկ ծովայիններին: Նրանց ծով է քշել սովը:

Բայց երեխաները չեն ուզում ողորմություն խնդրել, նրանք ուզում են իրենց հացը «վաստակել» և սկսում



...դեպի նավերն են լողում նորանոր նավակներ:

են ցատկել ջուրը, պտույտ գործել օդում, սուզվել, կռվել իրար հետ, հավանաբար նկատի ունենալով դրանով ծիծաղեցնել նավաստիներին, գրավել նրանց:

Մենք չենք ծիծաղում. մենք ճնշված ենք այդ տեսարանով: Իսկ դեպի նավերն են լողում նորանոր նավակներ: Նրանցից մեկի վրա ութից-ինը տարեկան երկու երեխա կա, իսկ մյուսի վրա լողում է ավելի հասակավոր մի տղա: Բայց ի՞նչ է այդ, տղայի առջևը. փոքրիկ ձեռքերով հենված գերանին, նստած է շատ փոքրիկ մի երեխա, նա երեք տարեկան հազիվ լինի:

Մեր նավից տաս մետր հեռավորության վրա լաստը կանգ է առնում: Մեծ տղան բարձր ձայնով ինչ-որ բան է ասում փոքրիկին. վերջինս կծկվում է, կուչ գալով բարձրանում, ճոճվելով իր բարակ ոտների վրա նետվում է ջուրը: Ջրի տակ նա անօգնական շարժումներ է կատարում, որպեսզի դուրս գա մակերես: Մեծը օգնում է նրան բարձրանալու լաստի գերանների վրա:

Փոքրիկը նորից նստում է, ընդունում նույն դիրքը՝ խաղաղ, մտածկոտ. ոչինչ չի խնդրում. միայն նայում է մեզ և տխուր ժպիտը լուսավորում է նրա փոքրիկ դեմքը: Մեծ տղան նորից հրամայում է փոքրիկին սուզվել, նրան քշում է լաստից:

— Հարկավոր չէ, մի՛ դիպչիր նրան, մի՛ համարձակվիր գոչում ենք մենք:

Մեկը մյուսի հետևից ծովայինները վազում են ճաշարան, բուֆետ, հավաքում են ինչ-որ գտնում են՝ հաց, պահածոներ, միս և տալիս են փոքրիկներին:

Երեխաները ագահաբար նետվում են հացի վրա, որսում են կտորները, որոնք պատահաբար ընկնում են ջուրը, քամում են սպունգի նման և հենց տեղն ու տեղը ուտում: «Կարագանդացիներից» ինչ-որ մեկը կամաց ասում է.

— Երանի, թե շուտ բեռնաթափվենք...

Մենք բոլորս էլ այդ ենք ցանկանում, հասկանալով, որ սովետական մարդկանց այդ անշահախնդիր նվերը՝ հացը, որ մենք տարել էինք հնդիկներին, թեկուզ ինչ-որ չափով կթեթևացնի սովահար ժողովրդի տանջանքները:

## ՀԵՌԱՎՈՐ ԱՓԵՐԻ ՄՈՏ

*(«Իոսիֆ Ստալին» տանկերի նավապետ Ն. Պլյավինի պատմածից)*

Անտարկտիկայից վերադառնալիս մեր տանկերը մտավ Հարավ-Աֆրիկյան Միության խոշորագույն նավահանգիստը՝ Կեյպտաուն: Հերթապահությունից ազատ բոլոր նավաստիներն ափ իջան: Նրանց հետ ես էլ գնացի:

Ավտոբուսում մենք ծանոթացանք մի պառավ կնոջ հետ, որն առաջինը դիմեց մեզ: Պարզվեց, որ նա կրթված կին է, ուսուցչուհի: Նա նոր էր հեռացվել դպրոցից, իբր թե ծերության պատճառով: Մենք զրույցի բռնվեցինք նրա հետ:

— Իմ տարիքը միայն առիթ էր պետերի համար,— սկսեց նա.— իրապես, ինձ դպրոցից հեռացրին նրա համար, որ ես աշակերտներին պատմում էի ճշմարտությունն իրենց կյանքի մասին...

Երեխաների կյանքը Հարավ-Աֆրիկյան Միությունում իրոք որ սարսափելի է: Դա երևում է թեկուզ այն կցկտուր տվյալներից, որ հաղորդեց մեզ ուսուցչուհին:

— Ամբողջ այս լայնարձակ երկրում աֆրիկացիների համար միայն 36 դպրոց կա: Դրանք էլ մի կերպ պատսպարվում են ողորմելի խրճիթներում: Իսկ մի քանիսն ուղղակի բաց երկնքի տակ են դաս անում: Այդ դպրոցներից մեկի 500 երեխաները նստում են գետնին և դաս սովորում առանց գրքի, տետրի ու մատիտի: Երեք դպրոց էլ կա, որ պարզապես քարանով ցանկապատված հողաշերտեր են: Ամեն մի աֆրիկացի դպրոցականի համար 23 անգամ ավելի պա-



— ...այս բոլորը կհիշեցնենք ում որ հարկ լինի...

կաս միջոց է ծախսվում, քան եվրոպական ծագում ունեցող երեխայի վրա:

Եվ զարմանալի չէ, որ այս պայմաններում աֆրիկացի բնակչության 85 տոկոսն անգրագետ է:

Ուսուցչուհին պատմեց նաև, որ երեխաները միշտ կիսաքաղց են մնում, իսկ բժշկական օգնություն համարյա չկա: Դրա համար էլ մահացությունը փոքրիկ աֆրիկացիների՝ նեգրերի, մուլատների և հնդկացիների շրջանում հսկայական է: Որոշ շրջաններում մահացության 600—700 դեպք է լինում:

Կեյպտաունում անցկացրած օրերը մեզ համոզեցին, որ ուսուցչուհին ճիշտ էր ասում: Ամեն տեղ մենք տեսնում էինք քաղցած, պատառոտված շորերով, հիվանդ երեխաների: Հազվադեպ էր լինում, որ նրանք հացի կտոր ունենային ձեռքերին, չնայած, որ տաժանակիր աշխատանքը նրանք սկսում են 4—5 տարեկան հասակից:

Նրանցից լավ չեն ապրում փոքրիկ եգիպտացիները, որոնց ես տեսա մի այլ նավարկության ժամանակ:

Հենց որ մեր նավը մոտեցավ Սուեզի ջրանցքի ափին, մոտակա խրճիթներից վազեցին եկան մի խումբ փոքրիկ եգիպտացիներ: Մեծերից ամեն մեկի հագին միայն մի շապիկ կար, որ հասնում էր մինչև կրունկները, իսկ փոքրահասակ երեխաները բոլորովին մերկ էին: Նրանք վազելով շրջեցին քարավանը և կանգ առան մեր նավի մոտ ու ձեռքերը թափահարելով ինչ-որ բան գոռացին:

Նավահանգստի եգիպտացի բանվորներից մեկը ժպտալով ասաց.

— Այս խեղճ երեխաները ողջունում են ռուս նավաստիներին... Նրանք ձեզ հաջող նավարկություն են ցանկանում:

Զննող հայացքով նայելով մեր նավաստիներին, նա ավելացրեց.

— Նրանք խնդրում են, որ եթե կարելի է մի քանի կտոր հաց տաք իրենց:

Հինգ րոպեից հետո մենք ափ տեղափոխեցինք ուտելիքի մի քանի փաթեթ:

Չի կարելի մոռանալ նաև մալայացի երեխաներին, որոնց ես տեսա մի անգամ Սինգապուրում: Մրգի խանութում ես զրույցի բռնվեցի մի մալայացու հետ, որն անգլերեն գիտեր:

— Ինչո՞ւ փողոցներում այսքան շատ երեխա կա,— հարցրի ես,— մի՞թե սրանցից ոչ մեկը դպրոց չի գնում:

— Ոչ, գրեթե ոչ մեկը չի սովորում:

Մալայացին բացատրեց, որ Սինգապուրում տեղական բնակչության համար դպրոցներ շատ քիչ կան: Այդ քաղաքում, որ 700 հազար բնակիչ ունի, 60 հազարից ավելի երեխաներ ոչ մի անգամ ոտք չեն դրել դպրոցի շեմքը:

Ոչ միայն ուսում, այլև մի կտոր հաց անգամ չեն կարողանում ճարել տասնյակ հազար սինգապուրցիներ իրենց երեխաների համար:

— Ձեզ համար դժվար կլինի հավատալ,— շարունակեց մալայացին,— որ Սինգապուրի ստվերախիտ արմավենիների և բարերար արևի տակ հնարավոր է այնպիսի անուրախ կյանք, ինչպիսին մերն է: Մահն ամեն տարի այցելում է այստեղ համարյա ամեն մի տուն: Չորսից վեց տարեկան երեխաների երկու երրորդը հիվանդ է տուբերկուլյոզով:

Մի քիչ լռելուց հետո, մալայացին ասաց.

— Որոշ մարդիկ բարվոք են համարում լռել այս բաների մասին: Բայց հեռու չէ այն օրը, երբ մենք այս բոլորը կհիշեցնենք ում որ հարկ լինի...



# ԵՐԱԺԻՇՏԸ

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ
(63-րդ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ)

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

*Առավոտ էր: Երևաց Թանթա գյուղաքաղաքի Ռեն փողոցի մշտական այցելուն: Նա մի փոքրիկ տղա էր, որի ուսից կախված էր հին հարմոնը և ծալովի աթոռակը: Նա քայլում էր հենակների օգնությամբ, որոնք անհավասար էին. դրա համար նրա մի կողմը միշտ ծռվում էր: Փողոցում քնած շներն էլ սկսեցին արթնանալ:*

*Տո՛նին այդ օրը սովորականից շուտ էր փողոց դուրս եկել: Նրան երկյուղն էր ստիպել այդպես վարվել: Ո՞ւմ լուսամուտի տակ նվագեր, երբ բոլորին էլ ձանձրացրել էր. չնայած, որ վարպետորեն էր նվագում: Օրինակ՝ մեկ ու կես ամիս պարոն Շերլոզը ձայն չէր հանել, բայց հետո հայհոյել էր Տոնիին: Տիկին Ռենարը նրանից պակասը չէր: Կին է, բայց նույնպես հայհոյում է: Մի խոսքով, տեղ չէր մնացել նվագելու: Բայց ոչ, նա հիշեց: Պարոն Արդուի հարևան տան մոտ նա երբեք չէր եղել: Այնտեղ ապրում էր Լենը: Տոնին դեմքով չէր ճանաչում նրան, բայց պատկերացնում էր որպես երկարահասակ, դեղին մազերով, կապույտ աչքերով բարի մի տղամարդ: Պարզապես, նա այդպես էր ցանկանում նրան պատկերացնել:*

*Շենքերի լուսամուտներում մարում էին վերջին լույսերը և սենյակներում խաղում էին բնակիչների ստվերները:*

*Ահա և Լենի տունը: Դա երկհարկանի, բազմաթիվ լուսամուտներով, մի շենք էր փողոցի մի ծայրում: Մուրացկանների և նման գործերով զբաղվողների համար դա ամենահարմար փողոցն էր. չկար ո՛չ ոստիկան, ո՛չ աղմուկ:*

*Տոնին նստեց իր աթոռակին, ոտքը մեկնեց առաջ և սկսեց նայել մի կետի: Նա որոշ ժամանակ այդ դրությամբ մնաց, ապա քրքրեց գրպանները, հույս ունենալով հացի մնացորդ գտնել. բայց չորացած փշրանքներից բացի, ոչինչ չգտավ:*

*Այդ պահին նա զգաց ծակող ցուրտ, որ մտնում էր մինչև ոսկորների ծուծը, և ասես թաքնվելու ապահով վայր էր փնտրում: «Նվագել» անցավ նրա մտքով: Բայց մատները ցրտից սառել էին, և երբ ցանկացավ հարմոնը բռնել, չենթարկվեցին:*

*...Երբ արևը իր դեմքը պայծառացրեց, հարմոնիստի մարմինը սողոսկեց ախորժելի տաքը, և անզգայացած անդամները մի պահ կենդանացան: Նա ձեռքերը մոտեցրեց ստեղներին: Հնչեց հարմոնի դուրեկան և մեղմ ձայնը: Աղբակույտերում թրև եկող շներն անգամ ցցեցին ականջները և շարժեցին թելի չափ բարակ պոչերը:*

*Տոնին նայում էր դրանց և ոգևորվում: Ուրեմն կայի՞ն շնչավորներ, որ լսում էին իրեն: Շուտով երևաց նաև մի աղքատ աղջիկ, շալի մեջ կծկված: Նա երկար նայում էր հարմոն նվագողին: Տոնին ճանաչում էր նրան, բայց միայն դեմքով: Աղջիկն ամեն առավոտ, հարմոնի ձայնը լսելով, դուրս էր*



Հնչեց հարմոնի դուրեկան և մեղմ ձայնը:

վազում գետնափոր տնից. գալիս էր և մայթին նստելով ունկնդրում։ Ի՜նչ հուզիչ էր եղանակը։

Երաժիշտն ամեն ինչ մոռացած, նայում էր աղջկան և ժպտում։ Շները, որոնք նույնպես ծանոթ էին փոքրիկ աղջկան, մոտենում էին նրան և շարվում շուրջը։

Երգը վերջացավ։ Հանկարծ աղջիկը ինչ-որ բան հիշելով, սթափվեց, վազեց և անհետացավ փողոցի ծայրում։ Դա սովորական և ամենօրյա գործողություն էր։

Կամաց-կամաց եկան նաև ցնցոտիների մեջ կորած մուրացկանները։ Նրանք շարվեցին իրար կողքի և չնայած, որ դեռ անցորդներ չկային, ըստ իրենց սովորության պարզեցին ձեռքերը։ Տոնին սկսեց երկրորդ երգը։ Մուրացկանները հաճույքով էին լսում։ Հանկարծ բացվեց վերևի լուսամուտներից մեկը։ Երևաց կարճահասակ, ընձուղտի նման երկար վիզ ունեցող մի մարդ և մի դույլ ջուր թափեց ներքև։ Տոնին թրջվեց և ինչ-որ բան փնթփնթաց։

— Բավական է գլուխս տանես,— ասաց անծանոթը և կրկին փակեց լուսամուտը։

Քիչ անց Տոնին արդեն փողոցի ծայրումն էր։ Նրան արտաքսել էին։ Մնում էր ռիսկ անել. գնալ պողոտա։

Ահա և պողոտան։ Խանութներն արդեն բացվել էին, անցորդների թիվը բավական շատ էր։ Տոնին ուսից հանեց աթոռակը և նստեց։ Նա ձեռքերը մեկնեց հարմոնին։ Լսվեց առաջին թեթև հնչյունը։ Տոնին եռանդ ստացավ և առանց շուրջը նայելու, որպեսզի չտեսնի ոստիկանին, սկսեց նվագել մի շատ տխուր եղանակ։ Նա նայում էր իր գզգզված գլխարկին, թե փող չի՞ հավաքվել։ Բայց ոչ։

Տոնին աչքի տակով նշմարեց մոտեցող ոստիկանին։ Նա եղանակը փոխեց և նվագեց աշխույժ մի երգ, կարծելով թե դա կարող է մեղմել ոստիկանին։

Երգը հուզեց նույնիսկ նվագողին։ Հին հուշերն արթնացան։ Մի տարի առաջ նա նվագում էր կաֆեում, բայց իր հետ կատարված դժբախտ պատահարից հետո տերը նրան հեռացրել էր, որպեսզի երաժշտախմբի տեսքը չտգեղացներ։

Ոստիկանը գալիս էր հանդարտ քայլերով, բայց ամեն քայլ գցելիս դեմքը խոժոռում էր։ Վերջապես չկարողացավ իրեն զսպել և գրեթե վազելով գնաց դեպի Տոնին և մատը մեկնեց առաջ ու մռլտաց. «Հայդա՛»։

Տոնին նայեց ոստիկանի մատի ուղղությամբ, վերցրեց դատարկ ու փոշոտ գլխարկը և հեռացավ։

Ավտոները սուլելով անցնում էին։ Մարդիկ խումբ-խումբ կամ առանձին շտապում էին ինչ-որ տեղ։ Տոնին այդ բոլորից անտեղյակ էր։ Նա միայն գնում էր, գնում և մտածում էր՝ ի՞նչ անել։ Ապրուստի ճանապարհները ամեն կողմից փակ էին։ Մնում էր մի բան. գնալ հարևան գյուղերը և այնտեղ էլ փորձել։ Բայց ախր հարևան գյուղերում էլ հազարավոր Տոնիներ կային։ Մտքերը խառնաշփոթ կերպով պտտվում էին գլխում։ Քաղցը սղոցում էր նրա ուղեղը։ Ի՞նչ անել անիծված ստամոքսին գոհացնելու համար։

Հանկարծ նա ժպտաց։ Գտնվեց... Նա նայեց հարմոնին, ձեռքը տարավ դեպի գործիքն ու այնպե՜ս քնքուշ շոյեց... Տոնին իր քայլերը ուղղեց դեպի «Լոմբարդ»։ Նա գլխիկոր մտավ այնտեղ և դուրս եկավ տխուր դեմքով։ Կորցրել էր մի հարազատ, շատ հարազատ էակ։



# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԵՐԵԽԱՆԵ՛Ր

Ալ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

## ԴՊՐՈՑԸ ՀՐԱԶԴԱՆԻ ՁՈՐՈՒՄ

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Հրազդանի գեղատեսիլ ձորում է գտնվում մանկական երկաթուղին: Նա իսկական մի դպրոց է, որտեղ տասնյակ պիոներներ ու դպրոցականներ սովորում են երկաթուղային գործը: Ուսումնական տարվա սկսվելը կամ ցուրտ ձմեռը չեն դադարեցնում նրանց պարապմունքները: Մանկական երկաթուղու ինժեներ-հրահանգիչներ՝ Գալյա Դեկանոսիձեն, Նադյա Հակոբյանը, Մարիա Ջաֆարյանը պարապում են ոչ միայն Երևանի դպրոցների աշակերտների հետ, այլև Լենինականի մի շարք դպրոցներում կազմակերպված պատանի երկաթուղայինների խմբակներում:

***

«Հայրենիք» կայարանի հրապարակում համազգեստ հագած շարքի են կանգնել պատանի երկաթուղայինները: Դրուժինայի խորհրդի նախագահ Եվգենե Առաքելյանը աշխատանքի բաժանում է կատարում:

— Սարգսյան Ռոբերտ՝ «Հայրենիք» կայարանի պետ,— կարդում է նա ձեռքի ցուցակը:

Շարքից մի քայլ առաջ է գալիս մի թխահեր պատանի.

— Այստեղ եմ,— ասում է նա զգաստ կանգնելով:

— Բագդյան Նինե՛լ՝ կայարանի հերթապահ:

— Այստեղ եմ,— հնչում է մի զրնգուն ձայն:

— Սահակյան Սուրե՛ն՝ «Ուրախություն» կայարանի պետ...

Եվ այսպես, մեկ առ մեկ նշանակվում են գնացքի մեքենավար, հսկիչ, կայարանի հերթապահներ, գծի սլաքավարներ, ուղեկցողներ և ուրիշ շատ աշխատողներ:

Բոլորն անմիջապես գրավում են իրենց տեղերը:

Գնացքի ստուգող Խաչատրյան Էդիկը մանրամասնորեն զննում է շոգեքարշի ու վագոնների տեխնիկական վիճակը: Նա երկար դիտում է արգելակները: Ամեն ինչ կարգին է: Կայարանի հերթապահը կարգադրում է սլաքավարին շոգեքարշը երկրորդ գծից անցկացնել առաջին գիծ: Ուղևորները կարգ ու կանոնով մտնում են վագոնները և զբաղեցնում իրենց տեղերը: Սեմաֆորը բաց է: Հաջորդ կայարանը պատրաստ է գնացքն ընդունելու:



*Մանկական երկաթգծում: Մեքենավարի օգնական Յ. Հայրապետյանը պարապում է պատանի շոգեքարշայինների հետ:*

Կայարանի հերթապահը, փոքր ընդմիջումով, երկու անգամ խփում է զանգը: Նույն պահին լսվում է ավագ ուղեկցողի սուլիչի երկար սուլոցը:

— Ո՛ւ, ո՛ւ ո՛ւ...— հրաժեշտի նույնպիսի մի սուլոցով պատասխանում է շոգեքարշը և սլանում առաջ:

«Ուրախություն» կայարանում պատրաստվում են դիմավորելու նրան...

Տասնհինգ տարի է, որ գոյություն ունի

մանկական երկաթուղին: Այդ տարիների ընթացքում շատ պատանիներ են դարձել իսկական երկաթուղայիններ, անվանի մեքենավարներ:

Առաջին անգամ այստեղ են շոգեքարշ վարել սովորել նախկին պիոներներ, Ադրբեջանի երկաթգծի անվանի մեքենավարներ՝ Մահմուդ Ռիզաևն ու Թալաթ Իսմայիլովը, ինչպես նաև՝ Սերյոժա Ստեփանյանը, Ռաֆիկ Սիմոնյանը, Սարգիս Բաղալյանը և շատ ուրիշներ:

***

Պատանի երկաթուղայինները ցնծության մեջ են այսօր: Երկաթուղու պետ ինժեներ-լեյտենանտ ընկեր Գևորգ Մարտիրոսյանը ուրախ լուր հաղորդեց. այսօր Երևան—Թբիլիսի մարդատար գնացքը տեղափոխելու են իրենք՝ պատանի երկաթուղայինները:

Բոլորի դեմքերը շողում են հրճվանքից:

— Ա՛յ, դա իսկական գործ է՜...

— Իհարկե, գնացքի անձնակազմի հսկողությամբ,— բացատրեց երկաթուղու պետը:

Բայց որքան մեծ եղավ երեխաների ուրախությունը, երբ իմացան, որ դրանից հետո վարելու են Երևան—Բաքու գնացքը:

— Դա դեռ բոլորը չէ,— խորամանկ ժպիտով ասաց երկաթուղու պետը:

— Է՛լ ինչ կա,— անհամբեր հարցրին մի քանիսը և շունչները պահած սպասում էին, թե ինչ պետք է ասի իրենց պետը:

— Երրորդ ուղևորությունը կլինի Երևան—Ռոստով:

— Ուռա՛,— բացագանչեցին բոլորը:

— Այժմյանից պետք է լավ նախապատրաստվենք,— ասաց ապագա մեքենավար Եվգենիան իր ընկերոջը՝ Աշոտին:

Եվ բոլորը սկսեցին եռանդով ուսումնասիրել այն ճանապարհը, որով պետք է անցնեին:

— Մեկնելու մասին արդեն հեռագրված է Թբիլիսի,— ասաց երկաթուղու պետը:

Տղաները զգաստացան:

— Մենք պատրաստ ենք հաղթահարելու ամեն տեսակ դժվարություններ,— համարձակ պատասխանեցին պատանի երկաթուղայինները:

# ՄԻ ՏԱՐԻ ՀԵՏՈ

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

*Ֆոտո՝ Ք. ՍԵՎԱՆՅԱՆԻ*

*Հենց որ առաջին անգամ Հակոբը հանդիպեց Սուրիկին, հիշեցրեց պատանի տեխնիկների Կենտրոնական կայանի մասին:*

*— Սուրի՛կ, մի անգամ ինձ ասացիր, թե քեզ կտանեմ կայան և դու կընդունվես էլեկտրատեխնիկական խմբակ:*

*— Արի՝ հենց հիմա գնանք:*

*Նրանք նստեցին տրամվայ և գնացին կայան: Սուրիկն անմիջապես Հակոբին ծանոթացրեց կայանի ավիամոդելային խմբակի աշխատանքին:*

*— Հակո՛բ, տես, թե օդանավերի ի՜նչ լավ ու գեղեցիկ մոդելներ են պատրաստել: Այս կարմիր մոդելը Մինասինն է: Դրանով նա սահմանել է ռեսպուբլիկական ռեկորդ: Սա Արամի մոդելն է. թռչում են ջրի վրայից: Տեսնո՞ւմ ես՝ անիվների փոխարեն լողակներ ունի:*



Պիոներների պալատի պատանի միչուրինականների խմբակի անդամները Ռ. Ղազումյանի ղեկավարությամբ, ուսումնասիրում են բույսերի տեսակները:



Պիոներների պալատի ռադիո-խմբակի անդամներ՝ Մ. Անանիկյանը, Լ. Մակարյանը և Հ. Կետագուշյանը ստուգում են իրենց պատրաստած ռադիո-ընդունիչները:

Ընկերները շրջեցին կայանի բոլոր կաբինետները: Նրանք տեսան, թե ինչ հետաքրքիր քիմիական փորձեր էին դնում բարձր դասարանի աշակերտները: Եղան կոնստրուկտորական, փայտամըշակման, ֆոտո, ռադիո և «Հմուտ ձեռքեր» խմբակներում: Ի՞նչ գեղեցիկ իրեր էին պատրաստել «Հմուտ ձեռքեր» խմբակի անդամները: Փոքրիկ կոնստրուկտորներն էլ պատրաստել էին գոլորշու շարժիչներ, որոնք անխափան աշխատում էին: Ռադիո-խմբակի պատրաստած բազմալամպ ընդունիչներով հստակ որսում էին տարբեր քաղաքներից հաղորդվող համերգները: Հակոբը լսում էր ու զարմանում:

Հակոբն ու Սուրիկը մտան էլեկտրատեխնիկական կաբինետը: Հակոբի աչքերը շլացան: Ինչքա՜ն ինքնաշեն սարքեր կային այստեղ...

Սենյակում դրված էր քայլող էքսկավատորի գործող մոդելը: Հակոբն իսկույն ճանաչեց:

— Երևի չի աշխատում, հը՞...

— Աշխատում է, աշխատում, ա՛յ, նայիր. երբ պտտում եմ առաջին թևը, էքսկավատորի սլաքը բարձրանում է վեր, երկրորդ թևը պտտելիս նրա շերեփը հարվածում է ապարին, որ պոկի:

— Քայլո՞ւմ է, Սուրի՛կ:

— Այժմ ես պտտում եմ երրորդ թևը՝ տես, էքսկավատորը ոտքերը բարձրացրեց. նա հիմա հենվում է իր ստորին մասի պլիտկայի վրա: Ես շարունակում եմ պտտել թևը և էքսկավատորը ոտքերը մեկնում է առաջ: Հենվելով ոտքերի վրա, ամբողջ մարմնով շարժվում է առաջ: Տեսնո՞ւմ ես, մոդելը լրիվ աշխատում է:

— Սուրի՛կ, թույլ տուր մի անգամ էլ ես պտտեմ:

Եվ Հակոբը մեծ հրճվանքով պտտեց քայլող էքսկավատորի երրորդ թևը: Մեքենան սեղանի վրա կատարեց մի քայլ, հետո երկրորդը, երրորդը, չորրորդը... Նա քայլում էր առանց դժվարության:

Հետո նրանք դիտեցին պորտալարային կռունկի մոդելը, աերոդինամոմետրը, չափազանց հետաքրքիր ֆոտոռելեն, բազմաթիվ և բազմատեսակ էլեկտրամոտորները, տրամվայի մոդելը, որը շարժվում էր շրջանաձև ռելսերի վրա, և ուրիշ շատ ու շատ սարքեր: Նրանք մոտեցան պատուհանին, որտեղ դրված էր մի ուրիշ սարք:

— Իսկ սա ի՞նչ է:

— Սա բարձր հաճախականության գեներատոր է: Պատրաստել են բարձր դասարանների աշակերտները: Սրանով էլեկտրականությունն առանց լարերի հաղորդում են տարածության մեջ: Այ տե՛ս,— ասաց Սուրիկը ու գործիքը միացրեց էլեկտրական հոսանքին:

Հետո Սուրիկը վերցրեց մի լամպ, որը միացված էր հաղորդալարից պատրաստված օղին և սկսեց դանդաղ կերպով մոտեցնել սարքին: Լամպի միջի լարը կարմրեց: Սարքին մոտեցնելուն պես լարի կարմիր գույնն ուժեղանում էր, և վերջապես շիկացավ ու սկսեց լույս արձակել:

— Բայց չէ՞ որ լարի և հոսանքի աղբյուրի մեջ չկա ոչ մի հաղորդալար,— զարմացավ Հակոբը:

Սուրիկը ծիծաղեց, լամպը դրեց մի կողմ, իսկ որոշ հեռավորության վրա՝ կոնդենսատորը

*— Հակո՛բ, ձեզ դիր կոնդենսատորի արանքը։*

*Հակոբը փորձեց։*

*— Այս ի՞նչ տաք է...*

*Այդ պահին ներս մտավ կայանի դիրեկտոր ընկեր Հայրապետյանը։*

*— Հը՞, Սուրի՛կ, վերադարձե՞լ ես ճամբարից։*

*— Այո, շուտով կսկսվեն դասերը։*

*— Շարունակելո՞ւ ես խմբակ հաճախելը։*

*— Այո... սա էլ իմ ընկերն է՝ Հակոբը։ Ընկեր Հայրապետյա՛ն, Հակոբն էլ է ցանկանում հաճախել կայան։*

*— Ո՞ր խմբակն ես ցանկանում մտնել։*

*— Ես ուզում եմ հաճախել բոլոր խմբակները։*

*Ընկեր Հայրապետյանը ժպտաց և ասաց.*

*— Միայն մի խմբակ կարելի է, բոլորը միաժամանակ հաճախել չի թույլատրվում, չէ՞ որ դու դասեր ունես սովորելու։*

*Այս դեպքը մի տարի առաջ էր։ Հակոբն ընդունվեց Պատանի տեխնիկների կենտրոնական կայանի էլեկտրատեխնիկական խմբակը։ Նա մի տարվա ընթացքում, համառ աշխատանքի շնորհիվ, վերացրեց իր բոլոր վատ գնահատականները։ Հիմա ունի միայն մի երեք և հինգ հատ հինգ գնահատական։ Կայանում Հակոբը պատրաստել է բազմաթիվ բարդ սարքեր։ Այս ամռանը նա պիոներական ճամբարում էլեկտրատեխնիկական խմբակի ղեկավար էր։*

*Հիմա Հակոբն ինքը իր ընկերներին համոզում է գնալ տեխնիկական կայանի խմբակները։ Սուրիկն ու Հակոբը որոշել են տասներորդ դասարանն ավարտելուց հետո անպայման մտնել որևէ տեխնիկական ինստիտուտ։*

---

# ՊԱՏԱՆԻ ԵՐԱԺԻՇՏՆԵՐԻ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆԸ

*Վ. ՏԱԼՅԱՆ*

*Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

Գարուն է, մայիսյան առավոտ։ Արևածագից սկսած թռչունները քաղամասը հեղեղում են իրենց երգերով։ Քիչ հետո թևավորների դայլայլին խառնվում է ջութակների, թավջութակների ու դաշնամուրների նվագը, որ լսվում է երկու հարկանի շենքի բաց լուսամուտներից։

Օրվա որոշ ժամերին նվագն ուժեղանում է։ Պատանի երաժիշտները պատրաստվում են քննության։

Ամեն օր դաշնամուրների զնգուն ակկորդներից արթնացող և ջութակների քնքուշ մեղեդիների տակ քուն մտնող շենքում գտնվում է Երևանի Արմեն Տիգրանյանի անվան յոթնամյա երաժշտական դպրոցը։ Դա չորրորդն է, որ գոյություն ունի ռեսպուբլիկայի մայրաքաղաքում։

Երաժշտական դպրոցի կյանքի սկիզբը 1948 թվականն է։ Այն ժամանակ նա դեռ ֆիլիալ էր և ուներ ընդամենը 54 աշակերտ։ Դասարաններն էլ շատ չէին. դաշնամուրի, ջութակի և թավջութակի։ Ճիշտ է, հիմա էլ դպրոց ընդունվում են յոթից մինչև ինը տարեկան երեխաներ, բայց նրանց թիվն արդեն հասել է հարյուր քառասունի։ Ավելացել է նաև տեսական առարկաների դասարանը։

— Մոտ ապագայում կունենանք նաև փողային գործիքների դասարան,— երազում է դպրոցի դիրեկտոր Բաբկեն Սարգսյանը, սովետական երեխաների երաժշտական կրթության գործին նվիրված երիտասարդ ջութակահարը։

Նրա հետ միասին տասնյակ պատանի երաժիշտներ են անցրել մյուս տասնչորս մանկավարժները։

Դպրոցի հիմնադրման սկզբից չէ, որ Քնարիկ Հովհաննիսյանն աշխատում է այդ դպրոցում. բայց նույնպես հպարտությամբ է հիշում 1952—53 ուսումնական տարվա վերջին համերգը։

Ոչ մեծ դահլիճը լեփլեցուն էր։ Եկել էին դպրոցի բոլոր դասատուներն ու մյուս աշխատակիցները։ Եկել էին ծնողներն ու բա-

րեկամները, եկել էին գործարանների աշխատողներից ոմանք: Իսկ աշակերտները լցրել էին դահլիճի մեծ մասը: Չէ՞ որ իրենց ընկերների բախտն էր որոշվում:

Անհանգստությունը մի փոքր մեղմացավ, երբ համերգն սկսվեց. իսկ երբ հանդես եկավ 5-րդ դասարանի գերազանցիկ Էդվարդ Բուդաղյանը և ջութակով փայլուն կերպով կատարեց Բախի «Լյա մինոր կոնցերտի» առաջին մասը, բոլորը թեթևացած շունչ քաշեցին: Նույն հաջողությամբ նա նվագեց Իլյինսկու «Օրորոցայինը»: Նույն դասարանի աշակերտ Վիկտոր Կապլանը անթերի կատարեց Լիստի «№ 23 կոնցերտի» առաջին մասը:

Ծափահարությունների տարափը դեռ չէր դադարել, երբ դաշնամուրին մոտեցավ 4-րդ դասարանի գերազանցիկ Սմբատյան Լիլիթը: Լիլիթը մասսայական դպրոցում էլ հինգերով է սովորում: Այդպիսին են նաև Էդվարդը, Վիկտորը և մյուսները:

Ունկնդիրները ոչ պակաս ջերմությամբ ընդունեցին Հրանտ Հակոբյանին, Մարո Ղազարյանին, Արաքսիա Մուրադյանին, Լուիզա Գոլդենային և մյուս պատանի երաժիշտներին:

Շատ հուզեց Սևան Պողոսյանը, որը թավջութակի վրա նվագեց վարպետորեն:

— Գործիքին շատ լավ է տիրապետում... Անպայման կշարունակի երաժշտական ուսումը...— վստահ ասում է հիմա դասատու Եղիշե Հարությունյանը:

Հաշվետու համերգը վերջացավ: Տարբեր մասնագիտությունների տեր մարդկանց տըղաներն ու աղջիկները հրաշալի քննություն տվին:

Միայն տարեվերջի համերգների ժամանակ չէ, որ երաժշտական դպրոցի սաները ցույց են տալիս իրենց շնորհքն ու գիտելիքները: Ուսումնական տարվա ընթացքում դպրոցում յոթ փակ և մի բաց համերգ է եղել: Եվ ինչպես ընդունված է, ամեն մի աշակերտ տարեկան երկու ելույթ է ունեցել:

Համերգներին ներկա գտնվողները մեծ հաճույքով են լսել երրորդ, չորրորդ և հինգերորդ դասարանների 60 աշակերտից կազմված երգեցիկ խմբի ելույթները: Այդ երկձայն խումբը կազմակերպված է, որպեսզի երեխաներն ուսումնասիրեն սովետական և կլասիկ վոկալ երաժշտությունը:



*Արմ. Տիգրանյանի անվան երաժշտական դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ Էդվարդ Բուդաղյանը տանը։*

Դպրոցն ունի նաև լարային կվարտետ. իսկ մնացած երեխաները ընդգրկված են մի քանի դաշնամուրային և լարային դուետներում.

Այսպես, բազմակողմանի երաժշտական կրթություն են ստանում Երևանի գործարանային թաղամասի երեխաները:

Ուսումնական գործին շատ է օգնում այն, որ դպրոցը լրիվ ապահովված է առաջնակարգ երաժշտական գործիքներով և ունի հարուստ գրադարան՝ 4200 գիրք ու նոտա:

***

Նորից սկսվել է ուսումնական տարին: Ամռան լռությունը լքել է դպրոցի սենյակները: Դպրոցի բաց լուսամուտներից դարձյալ լսվում է ջութակների մեղմ զեղզեղանքը և դաշնամուրների կարկաչը: Հանգիստ է նվագը, դեռ անվարժ են փոքրիկ ձեռքերը: Տասնյակ անգամ կրկնվում են միևնույն վարժությունները: Կանցնեն ամիսներ և այդ անվարժ ձեռքերը տարեվերջի համերգին կկատարեն երաժշտական պիեսները: Իսկ հնգամյակի վերջում դպրոցը կտա իր առաջին շրջանավարտները:

# ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐ



Սա Երևանի Նոր-Արեշ ավանի նորակառույց դըպրոցն է: Դպրոցն ունի բոլոր անհրաժեշտ հարմարություններըː Տասներկու լուսավոր և ընդարձակ դասասենյակներից բացի, դպրոցում կան բնագիտական, ֆիզիկայի, քիմիայի, բժշկական և այլ կաբինետներ ու լաբորատորիաներ: Դպրոցն ունի հիանալի սպորտային դահլիճ, գրադարան, պարսպապատ գեղեցիկ բակում՝ սպորտային հրապարակ:

Այս տարի Երևանում կառուցվել է այսպիսի 6 նոր շենք՝ Թամանցիների փողոցում, Շենգավիթում, Այգեստանում և այլ տեղերում: Բացի այդ, բացվել է երեք միջնակարգ դպրոց, իսկ Սպանդարյանի և Շիրվանզադեի անվան դպրոցների երեք հարկանի շենքերի վրա կառուցվել է մի հարկ ևս: Նոր ուսումնական տարում քաղաքի դպրոցների առաջին դասարաններում ընդունվել են 4 հազար երեխա: Այժմ Երևանում սովորում է 53.600 աշակերտ:

Դպրոցների լաբորատորիաների ու կաբինետների համար ձեռք է բերված 50 հազար ռուբլու գույք և լաբորատոր սարքավորում: Դրականությամբ հարստացել են դպրոցական գրադարանները:



## Գրքերի ԱՇԽԱՐՀՈՒՄ



## «ԻՄ ՔԵՌԻ ԱՍԱՏՈՒՐԸ»



*Խաչիկ Հրաչյանի «Իմ քեռի Ասատուրը» մանկական բանաստեղծությունների գրքույկի մեջ զետեղված է վեց բանաստեղծություն: Դրանցից ամենամեծը «Իմ քեռի Ասատուրը» պոեմն է:*

*Ժրաջան կոլտնտեսական է քեռի Ասատուրը: Լավ այգեպան է նա: Նրա մոտ մի օր գալիս են Դավիթը, Սեթը և Խորենը: Նրանք ուզում են օգնել պապիկին: Վերցնելով գործիքները, երեխաները գնում են գործի: Բայց մինչև տեղ հասնելը մի գեղեցիկ բացատում տարվում են խաղով, մոռանում իրենց անելիքը: Այդ ժամանակ նրանց է մոտենում քեռի Ասատուրը և խրատում: Երեխաները խոստանում են լինել ուշիմ և կարգապահ, և եռանդով կատարում են իրենց գործը:*

*«Փնթի Սեթը» գրվածքում սագը, բադը, հնդկահավը և կատուն գնում են այցի իրենց ծանոթ Սեթին: Նրանց է միանում կեղտոտ խոզուկը: Տեսնելով Սեթին, առաջին երեքը խորշում և փախչում են տանից, իսկ կեղտոտ խոզուկը ընկերանում է նրան:*

*Այսպիսով հեղինակը ծաղրում է կեղտոտ ու փնթի երեխաներին:*

*Հաջող է լեհ բանաստեղծ Յու. Տուվիմից կատարված փոխադրությունը՝ «Սեղանը»:*

*Խաչիկ Հրաչյանը գրում է աշխույժ և պատկերավոր լեզվով. բանաստեղծությունների նյութը կոնկրետ է:*

*Հ. ՇԻՐԱԶՅԱՆ*

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ամեն տարի սեպտեմբերի 5-ից մինչև հոկտեմբերի հինգը անց են կացվում պիոներական ակտիվի ընտրություններ: Այդ օրերին դուք, պիոներնե՛ր, հավաքվում եք և քննարկում անցյալ տարվա ձեր աշխատանքները: Օղակավարները, ջոկատների և դրուժինաների խորհուրդների նախագահները պիոներներին պատմում են կատարած հետաքրքիր աշխատանքների, ինչպես նաև թերությունների մասին:

Հասկանալի է, որ պիոներական կազմակերպությունը լավ է աշխատում, երբ դրուժինաներում, ջոկատներում և օղակներում կան ակտիվիստներ, որոնք առաջին հերթին իրենք են լավ սովորում և հոգ են տանում, որպեսզի մյուսներն էլ այդպես սովորեն, երբ նրանք լավ կազմակերպիչներ են և կարողանում են իրենց հետևից տանել մյուսներին: Հենց այդպիսի պիոներների պետք է ընտրել ջոկատների և դրուժինաների խորհուրդներում:

Ընտրությունները սկզբում անց են կացվում օղակներում: Օղակի հավաքույթում օղակավարը համառոտ կերպով պատմում է օղակի և առանձին պիոներների աշխատանքի մասին, որից հետո ելույթ են ունենում իրենք՝ պիոներները, քննարկում օղակի աշխատանքը և մտցնում իրենց առաջարկությունները: Այնուհետև բաց քվեարկությամբ ընտրում են օղակավար՝ մի տարի ժամանակով:

Օղակային հաշվետու-ընտրական հավաքույթում մասնակցում է ջոկատավարը և ջոկխորհրդի անդամներից մեկը:

Հաշվի առնելով օղակի անդամների ցանկությունները ու առաջարկները, օղակավարը խորհրդակցում է ջոկատավարի և դասարանի ղեկավարի հետ և կազմում է մեկ ամսվա աշխատանքային պլան: Օղակը կարող է պլանավորել և անցկացնել էքսկուրսիաներ ու արշավներ հայրենի երկիրն ուսումնասիրելու նպատակով, կազմակերպել նոր գրքերի ընթերցումներ և քննարկումներ, սպորտային մրցումներ և խաղեր, օգնել դպրոցի բակի կանաչապատմանը, սպորտ հրապարակի սարքավորմանը, գրադարանի գրքերի նորոգման ու կարգավորման աշխատանքներին և այլն:

Սեպտեմբերի 15—25-ը անց են կացվում ջոկատի խորհրդի հաշվետու ընտրությունները: Այդ կապակցությամբ օղակները պատրաստում են ինքնագործ աշխատանքի փոքրիկ ցուցահանդեսներ, նախապատրաստում են ջոկատի ինքնագործ և ֆիզկուլտ խմբակների ելույթներ:

Ջոկատի խորհրդի աշխատանքների մասին կարճ հաշվետվությամբ հավաքույթում ելույթ է ունենում խորհրդի նախագահը: Պիոներները քննարկում են հաշվետվությունը և իրենց առաջարկությունները անում ջոկատի հետագա աշխատանքների մասին: Դրանից հետո պիոներները բաց քվեարկությամբ ջոկատի առավել ակտիվ, լավ սովորող և կարգապահ 3—5 աշակերտներից ընտրում են ջոկատի խորհուրդ՝ մի տարի ժամանակով: Այն ջոկատում, որտեղ պիոներների թիվը 10-ից չի անցնում, ընտրվում է միայն ջոկատի նախագահ: Ջոկատավարը չի ընտրվում, բայց մտնում է խորհրդի կազմի մեջ: Հաշվետու ընտրական հավաքույթին մասնակցում են ջոկատավարը, դասարանի ղեկավարը և դրուժինայի խորհրդի անդամներից մեկը:

Ջոկատի հավաքույթի մասին ջոկատի հուշատետրում գրանցվում է համառոտ հաշվետվություն:

Ջոկատների խորհուրդների հաշվետու ընտրություններից հետո, անց է կացվում դրուժինայի խորհրդի ընտրություն:

Դրուժինայի խորհրդի հաշվետու ընտրական հավաքույթի կապակցությամբ ջոկատները, օղակները և ստեղծագործական խմբակները պատրաստում են ցուցահանդեսներ ու նախապատրաստում զանազան ելույթներ:

Դրուժինայի հավաքույթում դրուժինայի խորհրդի աշխատանքների մասին հաշվետվությամբ հանդես է գալիս դրուժինայի խորհրդի նախագահը: Հաշվետվության քննարկումից և նոր ուսումնական տարում պիոներական աշխատանքը բարելավելու համար կատարված դիտողություններից և առաջարկություններից հետո պիոներները բաց քվեարկությամբ մեկ տարի ժամանակով, ընտրում են դրուժինայի խորհուրդ, որը բաղկացած է 3—15 հոգուց: Խորհուրդն իր կազմից ընտրում է նախագահ, դրուժինայի պատի թերթի խմբագիր և դրոշակակիր:

Երբ դրուժինայի պիոներների թիվը 10-ից չի անցնում, ընտրվում է միայն դրուժինայի նախագահ: Դպրոցի ավագ ջոկատավարը չի ընտրվում, բայց մտնում է դրուժինայի խորհրդի կազմի մեջ:

Դրուժինայի հավաքույթին ներկա են լինում դպրոցի դիրեկտորը, ավագ ջոկատավարը, դպրոցական կոմերիտական կազմակերպության կոմիտեի քարտուղարը և կոմերիտմիության ռայկոմի ներկայացուցիչը: Դրուժինայի հավաքույթի մասին դրուժինայի հուշատետրում գրանցվում է համառոտ հաշվետվություն:

Վերջացնելով պիոներական ակտիվի ընտրությունները, հարկավոր է անմիջապես ձեռնամուխ լինել առաջ քաշված խնդիրներն իրագործելուն: Ձեր հասարակական աշխատանքն էլ հենց պիոներական աշխատանքներին ակտիվ մասնակցելն է: Դե՛, ուրեմն կատարեք այդ, որքան կարող եք լավ:

Մ. ԱՄԻՐՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՖԵՍՏԻՎԱԼԸ

Այդ օրերին Բուխարեստն արտակարգ ցնծության մեջ էր: Շենքերի ճակատներին ծփացող դրոշակները, պատերին փակցված լոզունգներն ու պլակատները գեղեցիկ տեսք էին տվել քաղաքին: Ամենուրեք լսվում էր բազմալեզու խոսակցություն, երգ, ծիծաղ: Երիտասարդության և ուսանողների Համաշխարհային չորրորդ ֆեստիվալին մասնակցելու համար Բուխարեստ էին եկել աշխարհի երիտասարդության ներկայացուցիչները:



*Ֆեստիվալի դրոշի բարձրացումը:*

Օգոստոսի երկուսն է...

Տոնականորեն զարդարված ստադիոնում, երկնքի կապույտ ֆոնի վրա, բոլոր ազգերի դրոշակների հետ ծածանվում են ֆեստիվալի և խաղաղության սպիտակ ու երկնագույն դրոշակները: Կենտրոնական տրիբունայի դիմաց բազմաթիվ լեզուներով գրված են «Խաղաղություն և բարեկամություն» բառերը:

Հնչում են շեփորները...

Հինգ մեծ տերությունների ազգային դրոշները բարձր պահած անցնում է առաջատար շարասյունը: Նա տանում է ֆեստիվալի սպիտակ դրոշը:

...Հանդիսականների բուռն ծափահարությունների տակ քայլում են Չինաստանի դելեգատները, Կորեայի հերոսական որդիներն ու դուստրերը: Բոլորը ոտքի են կանգնում, երբ ստադիոն են մտնում սովետական երիտասարդության ներկայացուցիչները: Տրիբունաներից լսվում են «Ուռա», «Սովետական Միությունը խաղաղություն է» բացագանչությունները:

Տասնհինգ օր շարունակ բոլոր երկրների դելեգատները մեծ ոգևորությամբ ցուցադրում էին իրենց արվեստը: Առավոտից մինչև ուշ երեկո չէին դադարում սրտաբուխ երգերը: Քաղաքի համերգային դահլիճներում, թատրոններում, զբոսավայրերի ու հրապարակների բաց էստրադաներում ելույթներ էին ունենում նաև սովետական երիտասարդները: Նրանց համերգները ջերմ ընդունելություն էին գտնում: Ցուցահանդեսները, որ բացված էին ֆեստիվալի օրերին, այցելուների հիացմունքն էին առաջացնում: Ստադիոններում ու ջրավազաններում մեր երկրի պատանիներն ու աղջիկները ցուցադրում էին սովետական սպորտի նվաճումները:

Սովետական Միության դելեգացիան առաջին համերգը տվեց Երաժշտական թատրոնի նորակառույց շենքում: Հանդիսականներին հիացրեց սովետական բալետի երիտասարդ արտիստներ՝ Կուրգապկինայի և Լեդյախի, Իգրաիլևայի և Կուզնեցովի հիանալի արվեստը: Ներկա գտնվողները ծափերի որոտով էին դիմավորում սովետական շնորհալի երգչուհիներ՝ Օլեյնիչենկոյի, Ավդիևայի, ադրբեջանցի ջութակահար Ալիևի, Երևանի Կոնսերվատորիայի ուսանող Ամեդյանի և ուրիշների ելույթները: Նրանք ցնծությամբ ողջունեցին հայ կոմպոզիտոր Առնո Բաբաջանյանին, որը կատարում էր իր դաշնամուրային ստեղծագործություններից: Ֆեստիվալի լավագույն երգի համար առաջին կարգի մրցանակ շնորհվեց կոմպոզիտոր Մուրադելուն: Ալեքսանդրովը և Բաբաջանյանը ստացան երկրորդ և երրորդ կարգի մրցանակներ: Ֆեստիվալում մեծ հաջողությամբ հանդես էին գալիս սովետական գեղարվեստական առանձին կոլեկտիվներ՝ Մոսկվայի ուսանողների սիմֆոնիկ նվագախումբը, մոլդավական և վրացական պարի անսամբլները...

Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների երիտասարդության ներկայացուցիչները նույնպես փայլուն ելույթներ էին ունենում ֆեստիվալում:

Մեծ հետաքրքրությամբ էին անցնում սպորտային մրցումները: Ծանրության բարձրացման մրցումներում սովետական սպորտսմեն Կոստիլեր եռամրցման մեջ 350 կիլոգրամ ծանրություն բարձրացրեց: Նա գրավեց առաջին տեղը և ստացավ ոսկե մեդալ: Թռիչքային մրցումներում հաղթանակ տարավ Լեոնիդ Շչերբակովը: Կանանց մեջ ամենից բարձր թռավ Չուդինան: Բռնցքամարտի մրցումներում հաղթանակով դուրս եկավ Ենգիբարյանը: Սովետական սպորտսմեններ նվաճեցին 333 մեդալ, որից 202 ոսկե:

Հաշվել են, որ եթե մեկն ուզենար ներկա լինել բոլոր մրցումներին, լսել յուրաքանչյուր համերգը, տեսնել ցուցահանդեսները, նրան անհրաժեշտ կլիներ 70 տարի:

Ֆեստիվալի մասնակիցներն ամենուրեք ծաղկեփնջերով էին դիմավորում դեմոկրատական երիտասարդության ներկայացուցիչներին, նրանց հետ նվերներ, հասցեներ ու լուսանկարներ փոխանակում: Գաղութային երկրների պատանիներն ու աղջիկները պատմում էին այն հերոսական պայքարի մասին, որ մղում են իրենց երկրների միլիոնավոր երիտասարդները խաղաղության համար:

Եղբայրական ջերմ սիրով միմյանց ողջունում էին չինական երգչուհի Չժուն-ցինն ու ալժիրցի ուսանող Ռենեն, Ինդոնեզիայի պատանի Կիսուդիարջոն և ֆրանսիական դաշնակահար Ալեն Վերնանը, Չեխոսլովակիայի հայտնի վազող Էմիլ Զատոպեկն ու արաբը, հնդիկն ու կորեացին: Ֆեստիվալի վերջին օրերին Բուխարեստ եկավ բանտարկությունից ազատված,

խաղաղության անձկում մարտիկ Անրի Մարտենը, որին ցնծությամբ դիմավորեցին։

Կապիտալիստական մի շարք երկրների պատանիներ ու աղջիկներ չկարողացան մասնակցել փեստիվալին։ Բուրժուական կառավարողները նրանցից շատերին բանտ նետեցին և աքսորեցին հեռավոր վայրեր։ Անգլիական գաղութարարները Մալայայի երիտասարդության պատվիրակներին թույլ չտվին ուղիղ ճանապարհով մեկնելու Բուխարեստ։ Նրանք ստիպված էին անցնել խիտ, անանցանելի արևադարձային անտառների միջով և տանել իրենց ազգային դրոշը՝ փեստիվալին նվիրելու համար։ Ամերիկյան կառավարությունը հրաժարվեց անձնագիր տալ սևդանի բնիկի գծով երկրի չեմպիոն Մայլսին, իսկ Յապոնիայի երիտասարդության ներկայացուցիչները առաջին օրերին զրկվեցին փեստիվալին մասնակցելուց։

Փեստիվալին մասնակցող 111 երկրների 30 հազար պատանիներն ու աղջիկները ողջ աշխարհի երիտասարդության անունից երդվեցին մինչև վերջ պայքարել խաղաղության ու բարեկամության, երիտասարդության լուսավոր ապագայի համար։

Փ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

---

ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Կգամ՝ շոգը կցրեմ,
Կանաչները կչրեմ։

Բարի նման եմ, հար չեմ,
Արևի տակ կհալչեմ։

Ա. ՇԻՐՈՅԱՆ

---

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագիր՝ ՏԱԼՅԱՆ Վ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՍԵՎՈՒՆՑ Գ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 04452։ Պատվեր 630, տիրաժ 5000։ Տպագրական 21/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 1.IX.1953 թ.

Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.




## Յուլիուս Ֆուչիկ

*(Մահվան 10 տարին)*

Յուլիուս Ֆուչիկի կյանքն անցել է պայքարում: Փոքր հասակից նա արդեն շփվում էր բանվորների հետ: Պրագայի համալսարանում սովորելու տարիներին նա մասնակցում էր ուսանողական կոմունիստական խմբակներին, իսկ հետո էլ՝ ղեկավարում:



Նա և՛ սովորում էր, և՛ աշխատում: Եղել է սպորտային մարզիչ, տնային ուսուցիչ, շինարարության բանվոր, փողոցային կենդանի ռեկլամ:

Ֆուչիկն աշխատել է կոմունիստական թերթերում և ամսագրերում: Որպես ժուռնալիստ, չորս բանվորի հետ, 1930 թվականին եկավ Սովետական Միություն: Վերադառնալով իր երկիրը, նա գրեց նշմարտությունը Սովետների երկրի մասին: Ֆուչիկը երկու տարի եղել է «Ռուդե պրավո» թերթի թղթակիցը Մոսկվայում:

Երբ գերմանացիները 1939 թվականին Պրագա մտան, չեխոսլովակյան Կոմպարտիայի Կենտկոմը, որի անդամներից մեկն էր Ֆուչիկը, ընդհատակից ժողովրդին պայքարի էր կոչում ֆաշիստների դեմ: 1942 թվականին ֆաշիստները Ֆուչիկին ձերբակալեցին: Նրան մեկ ու կես տարի գազանաբար տանջեցին, բայց նա չկորցրեց հոգու արիությունը: Բանտում նա գրեց «Խոսք մահապատժից առաջ» գիրքը, որով նա առեյություն է արթնացնում ժողովրդի թշնամիների նկատմամբ և պայքարի կոչում մարդկանց կոմունիզմի համար:

1943 թվականի սեպտեմբերին ֆաշիստները սպանեցին Ֆուչիկին:

## Ի. Ս. Տուրգենև

*(Մահվան 70 տարին)*

Իվան Սերգեևիչ Տուրգենևն իր մանկությունն անց է կացրել միջին ռուսական հարթության մի գեղատեսիլ վայրում: Այստեղ, նախկին Օրյոլի նահանգում էր գտնվում նրա մոր կալվածքը: Մայրը հարուստ և դաժան կալվածատիրուհի էր: Տուրգենևի մանկությունն անցավ իր մոր կամայականության մռայլ տարիներին: Երեխան տեսավ ճորտատիրության ռեժիմի սարսափներն ու ատեց այն:

Ինը տարեկան հասակից Տուրգենևը սովորում էր Մոսկվայի մասնավոր պանսիոններում: 1837 թվականին նա ավարտեց Պետերբուրգի համալսարանը: Հետո ավելի խորացրեց իր ուսումը...



Մեծ գրողի առաջին պատմվածքը «Խորը և Կալինիչն» էր: Հեղինակն այդ և մյուս գործերում խոր հարգանքի զգացմունք էր առաջացնում դեպի ռուս գյուղացին:

Տուրգենևն այդ պատմվածքները հրատարակեց «Որսորդի հիշատակարանը» վերնագրով: Գոգոլի մահվան առիթով 1852 թվականին գրած մի հոդվածի համար Տուրգենևը Նիկոլայ առաջին ցարի կարգադրությամբ ձերբակալվեց և ուղարկվեց իր հայրենիք: Այդ ժամանակ գրեց «Մումու» հայտնի պատմվածքը, որով նա բողոքում է ամեն տիպի բռնության դեմ:

Տուրգենևը գրել է վեպեր, վիպակներ, պատմվածքներ, որոնցից հայտնի են «Ռուդինը», «Նախօրյակին», «Ազնվականական բույնը», «Հայրեր ու զավակներ» և այլն:

Տուրգենևը մեռավ 1883 թվականին:

## Գյուղացիական պատերազմը

Այն ժամանակ ճորտ գյուղացիների դրությունը Ռուսաստանում շատ ծանր էր: Վատ էին ապրում հատկապես Յաիկի (Ուրալի) շրջանի կազակները: 1773 թվականի աշնանը նրանց ապստամբության առաջնորդը դարձավ Դոնի կազակ Եմելյան Պուգաչովը: Նա ձգտում էր թեթևացնել գյուղացիների դրությունը: Պուգաչովն իր ջոկատով շարժվեց Օրենբուրգ ամրոցի վրա և մոտ վեց ամիս պաշարեց այն: Նրա ապստամբությունն ալեկոծեց Պովոլժյեի բնակչությանը:



Կազակների ապստամբությունը դարձավ գյուղացիական պատերազմ: Առաջ եկան մի շարք քաջ առաջնորդներ՝ բաշկիր Սալավաթ Յուլաեը, ուրալյան բանվորներ՝ Խլոպուշան և Բելոբորոդովը, կազակ Զարուբինը: Անեղ «Պուգաչը» հաջողություններ էր ունենում: Նրանից սարսափահար էին լինում կալվածատերերը և ազնվականները: Բայց 1774 թվականի մարտին նա վերացրեց Օրենբուրգի պաշարումը և գնաց դեպի Կազան: Իսկ այնտեղից իջավ հարավի տափաստանները: Քաղաքները մեկը մյուսի հետևից հանձնըվում էին նրան: Գյուղացիները միանում էին Պուգաչովին: Շատ միանում էին, բայց շատ էլ ցրվում էին: Իսկ ցարական կանոնավոր զորքերը հետապնդում էին: Կազակների մեջ քայքայում սկսվեց: Կազակների ավագները օգտվեցին այդ բանից և Պուգաչովին կապկպած հանձնեցին իշխանությանը: 1775 թվականի հունվարին Պուգաչովը մահապատժի ենթարկվեց: Նրա շատ կողմնակիցներ պատժվեցին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՈՒՐԱԽ ՀԱՆԴԻՊՈՒՄ




Մ. ԿՈՐՅՈՒՆ — Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ

Ողջո՜ւյն, ողջո՜ւյն, մեր հին ծանոթ,
Թանաքաման ու փորձանոթ,
Զանգ ու մատյան, գիրք ու տետրակ,
Քարտեզ, կավիճ, գրատախտակ։
Կարոտել ենք մենք ձեզ այնպե՜ս,
Երազում էլ տեսել ենք ձեզ,
Այժմ՝ դպրոց և աշխատանք,
Պատրաստ ենք մենք, ղողանջիր, զա՛նգ։